Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 6 ՄԱՐՏ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։

Հեռախոս՝ 2—52—78։

# ԸՆԿ. ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ՀԱՇՎԵՏՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ XV ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

*Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի հաշվետվությունը պարտիական կազմակերպությունների գործունեության մասին՝ ընդգրկում է Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 14-րդ համագումարից հետո անցած ավելի քան երկու տարվա ժամանակաշրջանը։*

*Այդ ժամանակաշրջանի բնորոշ առանձնահատկությունը Սովետական Միության կյանքում այն է, որ կարճ ժամկետում ավարտելով պատերազմի հետևանքով ավերված տնտեսության վերականգնումը, երկրում տեղի ունեցավ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի՝ արդյունաբե-*

րության, գյուղատնտեսության և տրանսպորտի նոր հուժկու վերելք։ Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը կատարվեց ու գերակատարվեց։

Սոցիալիստական ժողովրդական տնտեսության հետագա զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները արդեն 1950 թվականին Կառավարությանը հնարավորություն տվին լուծել կոմունիզմի խոշոր կառուցումների՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան ու Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի, Հյուսիս-Ղրիմյան ու Հարավ-Ուկրաինական ջրանցքների և Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի շինարարությունը սկսելու հարցը։

Խոշոր քայլ է կատարված մեր երկրի զարգացման այն հոյակապ պլանի կենսագործման ուղիով, որ ընկեր Ստալինը ուրվագծեց 1946 թվականին ընտրողների առաջ ունեցած իր ելույթում։

Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է քաղաքի և գյուղի բնակ-



չության բոլոր խավերի նյութական բարեկեցության հետագա արագ աճումով։

Ապրանքների մանրածախ գների իջեցման քաղաքականությունը, բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացումը և կոլխոզնիկների եկամուտների աճումը, սովետական ռուբլու կուրսի ամրապնդումը այնպիսի պայմաններում, երբ աշխատունակ ամբողջ բնակչությունը զբաղված է աշխատանքով, խիստ բարձրացրին սովետական ժողովրդի կյանքի կուլտուր-կենցաղային մակարդակը։

Վերջին տարիների ընթացքում մեծ հաջողություններ են ձեռք բերվել աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

Լենինյան-ստալինյան գաղափարների լայն պրոպագանդան հասցրեց ամբողջ սովետական ժողովրդի քաղաքական բարձր ակտիվությանը և նրա չտեսնված համախմբմանը բոլշևիկյան պարտիայի ու սովետական կառավարության շուրջը, մեծ առաջ-

նորդ և ուսուցիչ Ստալինի շուրջը։ (Բուռն ծափահարություններ):

Վերջերս անցկացված՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները և միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ու տեղական Սովետների ընտրությունները ցուցադրեցին Սովետական Միության ժողովուրդների բացառիկ միահամուռությունը, բարոյա-քաղաքական բարձր միասնությունն ու բարեկամությունը։

ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակակարգի կառուցման գործում ձեռք բերված վիթխարի հաջողությունները, մեր երկրի աշխատավորների բարեկեցության անշեղ վերելքը, սովետական կառավարության հետևողական խաղաղության քաղաքականությունը և Սովետական Միության հաստատակամ դիրքը միջազգային հարցերում՝ Սովետական Միության վրա են բևեռում Եվրոպայի ու Ասիայի արտասահմանյան երկրների միլիոնավոր աշխատավորների ուշադրությունը։

Աճում է կապիտալիստական երկրների աշխատավորների համակրանքը և նրանց վստահությունը սո-



ցիալիզմի երկրի նկատմամբ։ Անչափ աճել է Սովետական Միության հեղինակությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների մեջ։

Այսպիսով, հաշվետու տարիները եղել են սոցիալիստական ժողովրդական տնտեսության աննախընթաց աճման և մեր երկրի ծաղկման տարիներ, Սովետական Միության հզորության ամրապնդման և ամբողջ աշխարհի միլիոնավոր աշխատավորների մեջ նրա հեղինակության աճման տարիներ։

Միանգամայն այլ, հակադիր պատկեր ենք տեսնում կապիտալիստական երկրներում, այդ թվում և կապիտալիստական գլխավոր երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որը երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ անսանձ շահով հարստացավ պատերազմական մատակարարումների հաշվին։

Չհասնելով արտադրության մինչպատերազմյան մակարդակին, կապիտալիստական երկրների էկոնոմիկան կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի պայմաններում թևակոխել է նոր ճգնաժամ, որն իր խորությամբ ու

մասշտաբներով սպառնում է գերա-զանցել 1929—1933 թվականների տնտեսական ճգնաժամի ամայացու-ցիչ հետևանքներից։ Հօդս ցնդեցին կապիտալիստական շրջանների լայ-նորեն ռեկլամված պլանները՝ արդյու-նաբերական պոտենցիալի հետպատե-րազմյան լիակատար օգտագործման, բոլորին աշխատանք տալու և տնտե-սական ծաղկման վերաբերյալ։ Ամեն-ամիս աճում է գործազուրկների քա-նակը։ Տասնյակ միլիոնավոր մարդիկ չեն կարողանում աշխատանք գտնել։ Ավելանում է չաշխատող ֆաբրիկանե-րի ու գործարանների թիվը։ Աճում են ամենօրյա սպառման մթերքների ու ապրանքների գները։ Արժեքազրկվում են դրամները և նվազում է բանվոր-ների ռեալ աշխատավարձը։ Կապի-տալիստական բոլոր երկրներում ա-ճում է աղքատությունն ու սովը աշ-խատավորների մեջ, միևնույն ժամա-նակ աճում են կապիտալիստների շա-հույթները։

Այս ամենը ցույց է տալիս կապի-տալիստական հասարակակարգի սը-նանկությունը, նրա զառամածությու-



նը և այն, որ նա անընդունակ է աշ-խատավոր ժողովրդի համար ստեղ-ծելու կյանքի թեկուզ նվազագույն մարդկային պայմաններ։

Տիրապետող կապիտալիստական շրջանները չեն կարողանում տնտե-սական ճգնաժամից ելք գտնել և հույ-սը դնում են նոր պատերազմի վրա, նկատի ունենալով ռազմական պատ-վերների հաշվին բեռնավորել արդյու-նաբերությունը և դրանով իսկ իրենց համար ապահովել ավելի բարձր գեր-շահույթներ։

Ամերիկայի Միացյալ Նահանգները և կապիտալիստական մյուս երկրներն արագ տեմպերով իրենց էկոնոմիկան փոխադրում են ռազմական ռելսերի վրա, կրճատում են քաղաքացիական սպառման առարկաների արտադրու-թյունը, մեծացնում են բնակչության հարկումը, երկարացնում բանվորա-կան օրը, կրճատում և ոչնչացնում են նույնիսկ բուրժուական դեմոկրատիա-յի մնացորդները և ուժեղացնում ռա-տիկանական ռեպրեսիաները պրոգրե-սիվ կազմակերպությունների ու խա-ղաղության կողմնակիցների դեմ։

Իրենց երկրների պրոգրեսիվ ու խաղաղասեր ուժերի դեմ պայքարի ֆաշիստական մեթոդների գործադրմամբ նրանք ձգտում են հասնել իրենց թիկունքի ամրացմանը և խաբեությամբ ժողովրդին ներքաշել նոր պատերազմի մեջ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների ամբողջ արտաքին քաղաքականությունը խստորեն ենթարկված է իմպերիալիստական շրջանների ձգտմանը համաշխարհային տիրապետության և այլ երկրների տնտեսության ենթարկմանը Ամերիկայի էկոնոմիկայի շահերին։

Այն բանից հետո, երբ Ամերիկայի Միացյալ Նահանգները չկարողացան այդ նպատակին հասնել խաղաղ միջոցներով, ամեն տեսակի «օգնության պլաններով» և պարտություն կրեցին Ասիայի երկրներում, հատկապես Չինաստանում, նրանք դեն շպրտեցին «կարիքավոր երկրներին անշահախնդիր օգնություն ցույց տվող խաղաղասերների» դիմակը և բացե ի բաց կանգնեցին ուժի քաղաքականության



ուղու վրա, համաշխարհային տիրապետության հասնելու համար։

Ամերիկայի Միացյալ Նահանգները ուրիշ երկրների ներքին գործերին միջամտելու և իրենց «տնտեսական օգնության պլանները» մերժող ժողովուրդների դեմ զինված ուժ գործադրելու կուրս բռնեցին։

Այսպիսով, Ամերիկայի Միացյալ Նահանգները և նրանց պարտնյորները, Չինաստանում խայտառակ ձախողում կրելուց հետո, պատերազմի նախապատրաստությունից անցան ուղղակի ու բացահայտ ագրեսիայի դեմոկրատական Կորեայի դեմ, ճգնելով ընդլայնել այդ ինտերվենցիան և այն վերածել մեծ պատերազմի ընդդեմ դեմոկրատական Չինաստանի և Ասիայի այլ ժողովուրդների, ընդդեմ Սովետական Միության։

Ամերիկայի Միացյալ Նահանգների այդ պլանների իրագործումը Կորեայում հանդիպեց կորեացիների և չինական հերոս կամավորների արտասովոր ուժի դիմադրությանը։

Կորեայի օկուպացիան մինչև 1950 թվականի ծննդյան տոներն ավարտե-

լու պլանները ձախողվեցին և ամերիկյան օկուպանտները, իրենց սատելիտների զորքերի հետ միասին, Հյուսիսային Կորեայում կործանիչ հարված ստացան։

Ամերիկյան զորքերի, նրանց ստրատեգիայի ու տակտիկայի այդպիսի խոշոր պարտությունից հետո ամերիկյան ագրեսորները պատերազմի նախապատրաստության կենտրոնը փոխադրեցին Արևմտյան Եվրոպա։

Երկյուղ կրելով, թե արևմտաեվրոպական պետությունների հետ Ամերիկայի Միացյալ Նահանգների կնքած ռազմական դաշինքները Կորեայում կրած պարտության ազդեցության տակ կարող են քայքայվել, նրանք սկսեցին շտապ կերպով Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկն ամրացնել պատերազմական հատկացումները մեծացնելու, պարտադիր զինվորական ծառայության ժամկետները երկարացնելու, միասնական հրամանատարություն ունեցող միասնական Հյուսիս-ատլանտյան բանակ ստեղծելու և Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի մասնակից երկրների ռազմա-



կան մատակարարումները ուժեղացնելու միջոցով, բլոկ, որն ուղղված է ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների և Սովետական Միության դեմ։

Ամերիկայի Միացյալ Նահանգները, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան և Հյուսիս-ատլանտյան բլոկի մյուս մասնակիցները կանգնեցին աշխարհի հետպատերազմյան կառուցման վերաբերյալ Սովետական Միության հետ կնքված պայմանագրերի և համաձայնությունների հետագա խախտման ուղու վրա։

Արևմտյան Գերմանիայում նրանք վերականգնում են ռեվանշիստական ֆաշիստական բանակը՝ նրա մեջ ներգրավելով հիտլերյան գեներալներին և պատերազմի դատապարտված հանցագործներին, Ռուրի արդյունաբերությունը ծառայեցնում են Հյուսիս-ատլանտյան բանակի համար սպառազինություն պատրաստելու նպատակին։

Նույնպիսի գիծ են վարում նրանք նաև Ճապոնիայում, վերստեղծելով ճապոնական բանակը, որն ամերիկացիները մտադիր են օգտագործել Կո-

րեայի, Չինաստանի ու Ասիայի այլ երկրների, ինչպես նաև Սովետական Միության դեմ։

Սրանք են պատերազմի հրձիգների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների գանգստերական իմպերիալիզմի և նրանց հետ ընթացող՝ արևմտաեվրոպական կապիտալիստական երկրների կառավարությունների գործերն ու պլանները։ Սրանք են իմպերիալիստական լագերի՝ նոր պատերազմի հրձիգների լագերի պլանները։

Բայց այդ ագրեսիվ պլաններին գիմակայում է դեմոկրատիայի լագերը, խաղաղության կողմնակիցների լագերը։ Իմպերիալիստական շրջանների մարդակերական քաղաքականությունը ակտիվ դիմադրություն է առաջացնում կապիտալիստական երկրների աշխատավորների միլիոնավոր մասսաների մեջ, որոնք դեմ են սպառազինությունների մրցավազքին, դեմ են նոր պատերազմին, դեմ են պատերազմին ընդդեմ դեմոկրատական լագերի երկրների։

Որքան ավելի է խորանում տնտեսական ճգնաժամը, այնքան ավելի են



սրվում դասակարգային հակասությունները կապիտալիստական երկրների ներսում, այնքան ավելի է աշխատավոր ժողովուրդը ընդդիմանում տիրապետող դասակարգերի ագրեսիվ քաղաքականությանը և այնքան ավելի են շատանում խաղաղության կողմնակիցները։ Ինչպես մատնանշեց ընկեր Ստալինը «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցի մեջ՝ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ»։

Օրեցօր աճում են խաղաղության համար, նոր պատերազմի հրահրման դեմ ակտիվ մարտնչողների շարքերը։

Ատոմային զենքն արգելելու վերաբերյալ Ստոկհոլմյան կոչի տակ ստորագրել են ավելի քան 500 միլիոն մարդ։ Խաղաղության կողմնակիցների՝ Վարշավայում տեղի ունեցած համաշխարհային երկրորդ կոնգրեսին մասնակցում էին 80 երկրների ներկայացուցիչներ։ Աշխարհի բոլոր երկրների ժողովրդական ամենալայն

մասսաների կամքն էին արտահայտում նրանք, երբ քվեարկում էին հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի։

Ժողովրդական մասսաների այսպիսի տրամադրությունը պատերազմի հրձիգներին պետք է հարկադրի նախքան նոր պատերազմ սկսելը մի լավ մտածել։

Լայն թափ է ընդունում ազատագրական, հակաիմպերիալիստական շարժումը գաղութային ու կիսագաղութային երկրներում՝ Վյետնամում, Բիրմայում, Ֆիլիպիններում, Ինդոնեզիայում և այլ երկրներում։

Շահագործվող ժողովուրդները զենքը ձեռքներին են նվաճում իրենց երկրների ազատությունն ու անկախությունը։ Ամերիկայի Միացյալ Նահանգները, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Հոլանդիան և իմպերիալիստական այլ պետությունները ու նրանց զորքերը պարտություն-պարտության հետևից են կրում։

Վերջին տարիների մեծագույն իրադարձությունը պետք է համարել ռևոլյուցիայի հաղթանակը Չինաստանում, Չինական ժողովրդա-դեմոկրատական



ռեսպուբլիկայի հռչակումը և բարեկամության ու փոխադարձ օգնության պայմանագրի կնքումը Սովետական Միության ու Չինական ժողովրդադեմոկրատական ռեսպուբլիկայի միջև։ Չինաստանում դեմոկրատական, հակաիմպերիալիստական կարգի հաստատումը իմպերիալիստական լագերի խոշոր պարտությունն է Ասիայում։ Դրա հետ միասին՝ չին ժողովրդի հաղթանակը բազմապատկում է դեմոկրատիայի, Սովետական Միության կողմից գլխավորվող ամբողջ հակաիմպերիալիստական լագերի ուժերը։

Կարևորագույն իրադարձություն է նաև Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմակերպվելը, ռեսպուբլիկա, որը պայքարում է հանուն խաղաղության, հանուն միասնական դեմոկրատական Գերմանիայի, հանուն բարեկամության Գերմանիայի ու Սովետական Միության միջև։

Այսպիսով, դեմոկրատիայի և խաղաղության ուժերը վերջին տարիների ընթացքում շարունակ աճում էին,

խաղաղության օգտին միջազգային շարժումը ընդունել է ավելի կազմակերպված ձևեր։
Սովետական Միության կողմից գլխավորվող դեմոկրատական, հակաիմպերիալիստական ճագերի հարաճուն ուժը, նրա աճած հզորությամբ և պատերազմի առաջն առնելու ու խաղաղությունը պահպանելու անհողդողդ քաղաքականությամբ կվիժեցնի իմպերիալիստների հանցագործ պլանները, որոնց նպատակն է համաշխարհային նոր պատերազմ բորբոքել։
Սրանք են այն փոփոխությունները, որ վերջին տարիների ընթացքում տեղի են ունեցել Սովետական Միության կողմից գլխավորվող հակաիմպերիալիստական, դեմոկրատական ճագերի, և Ամերիկայի Միացյալ Նահանգների կողմից գլխավորվող իմպերիալիստական, հակադեմոկրատական ճագերի ուժերի հարաբերակցության մեջ։
Միջազգային ասպարեզում տեղի ունեցած այս իրադարձությունները չէին կարող չներգործել պարտիական կազմակերպությունների աշխատանքի վրա այն իմաստով, որ վերջիններս



պրագացնեին այն հարցերի լուծումը, որոնք բխում են Մոսկվայի ընտրողների ժողովում 1946 թվականին ընկեր Ստալինի կողմից սովետական ժողովրդի առջև դրված խնդիրներից՝ ժողովրդական տնտեսության՝ այնպիսի հուժկու վերելքի վերաբերյալ, որը մեր Հայրենիքին ապահովի ամեն տեսակ անակնկալներից։
Սովետական Միության ժողովրդական տնտեսության ընդհանուր աճման զուգընթաց՝ շարունակվում էր մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա աճն ու զարգացումը։
Հաշվետու ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունները լուծում էին Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի կողմից առաջադրված խնդիրները և 1950 թվականին հաջողությամբ ավարտեցին ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի կատարումը։
Թույլ տվեք քննության առնել ժո-

ղովրդական տնտեսության առանձին ճյուղերի վիճակը բնութագրող հիմնական ցուցանիշները։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունը համախառն արտադրանքի պետական պլանը 1950 թվականին կատարեց 103 տոկոսով, դրանով իսկ հնգամյա պլանով նախատեսված մակարդակը, մինչպատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, 2,1 անգամվա փոխարեն գերազանցելով 2,4 անգամ։

Հետպատերազմյան հնգամյակի ընթացքում համախառն արտադրանքը աճել է 2,6 անգամ, իսկ հաշվետու երկու տարվա ընթացքում արտադրանքի թողարկումը, 1948 թվականի համեմատությամբ, ավելացավ 46 տոկոսով։

Հաշվետու երկու տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի այսպիսի մեծ աճը հիմնականում ապահովվում էր՝ նոր ձեռնարկությունների կառուցման ու շահագործման հանձ-



նելու հետ միաժամանակ, նախկինում շահագործման հանձնած ձեռնարկությունների սահմանված կարողությունները յուրացնելու, տեխնիկական կատարելագործումներն արմատավորելու, մի շարք ձեռնարկություններում արտադրական պրոցեսները բարելավելու և ավելի կատարելագործված տեխնոլոգիա կիրառելու, ինչպես նաև գործող մի շարք ձեռնարկություններն ընդլայնելու հաշվին։

Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու ուղղությամբ կիրառված միջոցառումները չէին կարող չառաջացնել արտադրության որակական ցուցանիշների ընդհանուր բարելավում՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցում, շրջանառու միջոցների շրջանառության արագացում, արտադրանքի որակի բարելավում և արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա էլեկտրաէներգիայի, նյութերի ու հումքի ծախսման խնայողություն։ Դրա հետևանքով համարյա բոլոր ձեռնարկություններն սկսեցին աշխատել շահութաբերությամբ։

Աշխատանքի արտադրողականու-

թյունը 1950 թվականին, 1945 թվականի՝ հետպատերազմյան հնգամյակի սկզբի համեմատությամբ, աճեց 54,7 տոկոսով, իսկ 1948 թվականի համեմատությամբ՝ 27,8 տոկոսով։

Բանվորների և ծառայողների թիվը ռեսպուբլիկայում 1950 թվականին, 1945 թվականի համեմատությամբ, ավելացավ 59,8 տոկոսով, իսկ 1948 թվականի համեմատությամբ՝ 21,9 տոկոսով։

Անմիջականորեն արդյունաբերության մեջ զբաղված անձանց թիվը 1950 թվականին աճեց, 1945 թվականի համեմատությամբ, 102,4 տոկոսով, իսկ 1948 թվականի համեմատությամբ՝ 53 տոկոսով։

Հաշվետու տարիների ընթացքում շարունակվում էր աշխատավարձի ֆոնդի անշեղ աճը։ Ինչպես հայտնի է, պարենամթերքի և արդյունաբերական ապրանքների գների իջեցման ուղղությամբ Կառավարության կիրառած միջոցառումների հետևանքով բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը խիստ կերպով բարձրացավ։ Դրա հետ միասին 1950 թվա-



կանին աշխատավարձի ֆոնդն աճեց, 1945 թվականի համեմատությամբ, 130,6 տոկոսով, այսինքն ավելի քան երկու անգամ, իսկ 1948 թվականի համեմատությամբ՝ 32,4 տոկոսով։

Այդ միջոցառումները հասցրին աշխատավորների նյութական պայմանների հետագա խիստ բարելավմանը և նրանց բարեկեցության մակարդակի բարձրացմանը։

Սրանք են արդյունաբերության աճման այն ընդհանուր ցուցանիշները, որոնք ձեռք են բերվել արդյունաբերությունը զարգացնելու և ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար բանվորների սոցիալիստական մրցության լայն շարժումը պարտիական կազմակերպությունների կողմից ղեկավարելու գործի բարելավման վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվները Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի կողմից ճիշտ կենսագործվելու հետևանքով։

Հայաստանի կոմունիստական (բոլ-

շինիչների) պարտիայի 14-րդ համագումարը պարտիական կազմակերպությունների առջև որպես կարևորագույն խնդիր դրեց մետալուրգիական, քիմիական ու մեքենաշինական արդյունաբերության, իբրև առաջատար ճյուղերի, հետագա զարգացումը և ամբողջ ժողովրդական տնտեսության ապահովումը էլեկտրաէներգիայով Սևան-Զանգվի ջրերով աշխատող հիդրոէլեկտրակայանների շինարարությունն ընդարձակելու, ինչպես նաև ամբողջ էներգետիկ տնտեսության աշխատանքը բարելավելու միջոցով։

Ուստի ինձ թույլ եմ տալիս ավելի մանրամասն կանգ առնել արդյունաբերության այդ ճյուղերի վիճակի վրա։

Էլեկտրակայանների սահմանված կարողությունը 1950 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, աճեց 43,3 տոկոսով։ Էլեկտրաէներգիայի արտադրությունն այդ ժամանակամիջոցում աճեց 78 տոկոսով։

Էլեկտրակայանների կարողությունների այդ աճը և էլեկտրաէներգիայի արտադրության ավելացումը կատար-



վեց Սևանի հիդրոէլեկտրակայանը, Ձորագէսի 3-րդ ագրեգատը շահագործման հանձնելու, Քանաքեռգէսի կարողությունն ավելացնելու և մյուս էլեկտրակայանների աշխատանքը բարելավելու հաշվին։

14-րդ համագումարը Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմին հանձնարարեց մշակել այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեն Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, Արզնու հիդրոէլեկտրակայանի նախագծման արագացումը և Որոտան ու Օխչի գետերի շրջանում նախագծային-հետախուզական աշխատանքների կատարումը։

Ելնելով այս դիրեկտիվներից, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը միջոցառումներ մշակեցին Գյումուշի հիդրոէլեկտրակայանի կառուցումն ավարտելու ժամկետների կրճատման և հիշյալ օբեկտների նախագծման աշխատանքներն ավարտելու վերաբերյալ և դրանք մտցրին ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի քննարկմանը։

Մինիստրների Խորհուրդը և ՍՍՀՄ Մինիստրների Խորհուրդը ... 

Միութենական Կառավարությունն ընդառաջեց մեր առաջարկներին և կրճատեց Գյումուշի հիդրոէլեկտրակայանի կառուցումն ավարտելու ժամկետը, նրա երկու հիդրոագրեգատների շահագործման հանձնելու ժամկետը։

Միաժամանակ որոշում է ընդունվել 1952 թվականին սկսել Արզնու հիդրոէլեկտրակայանի շինարարությունը՝ նրա կառուցումն ավարտելով 1955 թվականին, այն հաշվով, որ առաջին ագրեգատը շահագործման հանձնվի 1955 թվականին, իսկ կայանը ամբողջ կարողությամբ 1956 թվականին, ինչպես նաև սկսել Քարվանսարայի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը 1955 թվականին, այն հաշվով, որ նրա առաջին ագրեգատը շահագործման հանձնվի 1958 թվականին։

Բացի վերոհիշյալ կառուցումներից, ռեսպուբլիկական կազմակերպությունները մշակել և Կառավարության քննարկմանն են ներկայացրել միջին կարողության կայանների կառուցման նախագծերը՝ Ստալինի անվան ջրանցքի վրա Որոտանի կայանի կառուցման նախագիծը, Ջորագէսի և



այլ հիդրոէլեկտրակայանների լրիվ կարողությամբ աշխատանքն ապահովող նախագծեր, բացի այն, որ արդեն որոշված է Օխչի գետի վրա նախագծվող էլեկտրակայանի, Այրումի կայանի և Կիրովի անվան գործարանի էլեկտրակայանի կառուցման հարցը։

Հիդրոէլեկտրակայանների շինարարության այս ծրագրի իրագործումը պետք է էլեկտրաէներգիայով ապահովի Հայաստանի ինդուստրացման հարաճուն պահանջը։

Հետագա գործունեության ընթացքում պարտիական կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացված լինի շինարարական աշխատանքների այնպիսի տեմպեր ապահովելու վրա, որոնք ապահովեն այդ կայանների շահագործման հանձնելը Կառավարության կողմից սահմանված ժամկետներին։

Գյումուշի էլեկտրակայանի շինարարության պետ ընկ. Աղաբաբովը, գլխավոր ինժեներ ընկ. Քարամյանը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պարտկազմակերպիչ ընկ. Սաղաթելյանը առաջին հերթին պետք է վերացնեն շինարա-

րական աշխատանքների կազմակերպման մեջ գոյություն ունեցող այն խոշոր թերությունները, որոնց մասին նրանց մատնացույց արեց Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը։

Շինարարության ղեկավարները պետք է ավելացնեն թունելների օրական միջին հորատումը, նկատի ունենալով, որ շինարարական աշխատանքները նշված ժամկետներին կատարելու գործում ամենադժվարը ստորերկրյա աշխատանքներն են։

Դրա համար հարկավոր է ավելի լիակատար կերպով օգտագործել եղած մեխանիզմները, մեծացնելով թունելների օրական միջին մեխանիզացված հորատման տեսակարար կշիռը։ Հարկավոր է տեխնիկական անձնակազմը դասավորել այնպես, որ մեքենայացված հորատման յուրաքանչյուր տեղամաս ապահովված լինի որակյալ տեխնիկական ղեկավարությամբ, որը տեղում վերահսկողություն իրականացնի և պրակտիկ օգնություն ցույց տա արտադրական տեղամասերին։

Հաջորդ հարցը, որի վրա Կենտկոմի



պլենումը հրավիրեց շինարարության ղեկավարների ուշադրությունը, դա աշխատանքի կազմակերպման և բանվորական ուժի ճիշտ տեղաբաշխման հարցն է, այն հաշվով, որ հիմնական, վճռական տեղամասերը անպայման ապահովված լինեն համապատասխան որակավորում ունեցող բանվորներով և ամենօրյա պլանների կատարման համար անհրաժեշտ պայմաններով։

Այս տարի մեծ չափով կավելանա շինարարության մեջ աշխատող բանվորների թիվը, ուստի անհրաժեշտ է վերացնել այն թերությունները, որոնք գոյություն ունեն բանվորների բնակարանային ու կենցաղային պայմանների, կուլտուրական սպասարկման և նրանց մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի բնագավառում։

Մինչև նոր կարողությունների շահագործման հանձնելը մեր առջև կանգնած գլխավոր խնդիրներից մեկըն է էլեկտրաէներգիայի խնայողաբար ծախսումը և արդյունաբերության կարևորագույն ճյուղերի անընդմեջ աշխատանքի ապահովումը։

*Այս խնդիրը պահանջում է Հայէներգոյի կառավարիչ ընկ. Փերիխանյանից, գլխավոր ինժեներ ընկ. Տեր-Ակոպովից և էներգետիկ սիստեմի մյուս ղեկավար կադրերից՝ ապահովել կայանների և ցանցերի շահագործման այնպիսի կարգ, որը բացառեր ընդհատումների հնարավորությունները Կառավարության կողմից սահմանված լիմիտների սահմաններում արդյունաբերությանն էլեկտրական էներգիա մատակարարելու գործում։*

*Հայէներգոն, համապատասխան մինիստրությունների հետ միասին, ամենամոտիկ ժամանակում պետք է ստուգի արդյունաբերական ձեռնարկությունների և այլ սպառողների էլեկտրական տնտեսության վիճակը, էլեկտրաէներգիայի սպառման ամենախիստ նորմաներ սահմանելու նպատակով։*

*Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ուժեղացնել վերահսկողությունը Կառավարության կողմից սահմանված էլեկտրաէներգիայի սպառման նորմաները ճշտորեն պահպանելու նկատմամբ և ապահովել է-*



*լեկտրաէներգիայի ծախսման գործում խնայողությունը՝ առանց բացառության բոլոր տեղամասերում։*

*Վերջին տարիների ընթացքում ավելի արագ տեմպերով է կատարվում գունավոր մետալուրգիայի զարգացումը։ 1950 թվականին արտադրանքի թողարկումը, 1948 թվականի համեմատությամբ, ավելացավ 80 տոկոսով։*

*Ղափանի հանքվարչությունը գերակատարեց Կառավարության հատուկ որոշմամբ 1950 թվականի համար սահմանված պլանը, հանքաքարը հանույթը գերազանցելով 12 տոկոսով։*

*Շամլուղի հանքերը նույնպես կատարեցին Կառավարության առաջադրանքը, և գերակատարեցին հանքաքարի հանույթի 1950 թվականի պլանը։*

*Իր աշխատանքը բարելավեց նաև Ալավերդու պղնձաձուլական գործարանը՝ 1950 թվականի պլանը կատարելով 109 տոկոսով, այդ թվում նաև էլեկտրոլիտային պղնձի պլանը։*

*1950 թվականի կեսերին շահա-*

գործման հանձնվեց «Կանազ» գործարանը, որի կոլեկտիվը կարճ ժամանակամիջոցում յուրացրեց հիմնական արտադրանքի թողարկումը, ամսեամիս բարելավելով արտադրանքի որակը։ Սակայն գործարանի դիրեկտոր ընկ. Ակոպովը, գլխավոր ինժեներ ընկ. Սոցկին և պարտկազմակերպության քարտուղար ընկ. Աղասարյանը պետք է այնպես կազմակերպեն արտադրությունը, որպեսզի դուրս գան Միության նույնանման առաջավոր ձեռնարկությունների շարքը, որոնք ներկայումս ունեն էլեկտրաէներգիայի ծախսման, արտադրանքի թողարկման և նրա որակի գծով լավագույն ցուցանիշներ։

Շինարարական կազմակերպությունը հենց տարվա սկզբից այնպես պետք է կազմակերպի իր աշխատանքը, որ կարողանա կատարել Կառավարության ցուցումները գործարանի 2-րդ ու 3-րդ հերթերի շինարարության և դրանք սահմանված ժամկետներում շահագործման հանձնելու մասին։

Ռեսպուբլիկական կազմակերպությունները, հաշվի առնելով այդ ձեռ-



նարկության կարևորությունը, պետք է գործարանի շինարարությանը ցույց տան ամեն տեսակի օգնություն և առաջին հերթին օգնություն կառուցող ինժեներների կադրերով, ինչպես նաև համապատասխան շինանյութերը ժամանակին մատակարարելով։

Գունավոր մետալուրգիայի արտադրանքի հետագա ավելացման գործում մեծ նշանակություն ունի Քաջարանի կոմբինատի առաջին հերթը շահագործման հանձնելը։

Այդ շրջանների պարտշրջկոմների խնդիրն է՝ բարելավել իրենց կապը շինարարական կազմակերպությունների հետ և նրանց սիստեմատիկ օգնություն ցույց տալ հենց այդ շրջաններում բանվորական ուժ հավաքագրելու գործում։

Հաշվետու տարիների ընթացքում երկրաբանական-հետախուզական ավելի ինտենսիվ աշխատանք է կատարվել գունավոր մետաղների, պոլիմետաղների և այլ հանածոների հայտնաբերման ուղղությամբ։

Երկրաբանական-հետախուզական աշխատանքների ծավալը 1950 թվա-

կանին, 1948 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան չորս անգամ։

Այդ նույն ժամանակամիջոցում հանելու համար պատրաստված պղնձի և այլ գունավոր մետաղների պաշարներն ավելացել են 2—2 և կես անգամ։

Այդ հանքավայրերից մի քանիսը բավականաչափ ուսումնասիրված են և արդեն սկսվել է դրանց արդյունաբերական մշակումը։

Այն կապակցությամբ, որ հետագայում ևս կընդարձակվեն երկրաբանական-հետախուզական աշխատանքները, անհրաժեշտ է, որպեսզի Հայկական ՍՍՌ երկրաբանական վարչությունը՝ ընկ. Հարությունյանը, ընկ. Վարդապետյանը և ընկ. Սարգսյանը իրենց ուշադրությունը կենտրոնացնեն երկրաբանական-հետախուզական աշխատանքներում ժամանակակից նոր տեխնիկայի կիրառման և երկրաբանական արշավախմբերի աշխատողների բնակարանային-կենցաղային պայմաններն ու կուլտուրական սպասարկումը բարելավելու, երկրաբանական կադրերի մեջ կատարվող քաղա-



քական աշխատանքն ուժեղացնելու և նրանց պետական կարգապահությունը խստորեն պահպանելու ոգով դաստիարակելու վրա։

Հաշվետու ժամանակաշրջանում շարունակվում էր քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը՝ գործող ձեռնարկությունների ընդարձակման և սահմանված կարողությունների յուրացման հաշվին։

1950 թվականի պլանը քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները կատարեցին 99,6 տոկոսով։ 1950 թվականի համախառն արտադրանքը, 1948 թվականի համեմատությամբ, աճեց 73 տոկոսով։ Զգալիորեն բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը և ընդարձակվել է ասորտիմենտը։

1950 թվականին համախառն արտադրանքի պլանի թերակատարումը բացատրվում է Կիրովականի Մյասնիկյանի անվան կոմբինատի անհամաչափ աշխատանքով։ Կոմբինատի ղեկավարությունը և մասնավորապես դիրեկտոր ընկ. Ժավորոնկովը բավարար հմտություն չցուցաբերեցին ար-

տադրական պրոցեսը կազմակերպելու գործում, երբ մասնակի ընդհատում տեղի ունեցավ ձեռնարկության էլեկտրաէներգիա մատակարարելու տեսակետից։ Փոխանակ առավելագույն չափով օգտագործելու էլեկտրաէներգիան այն ժամանակաշրջաններում, երբ կոմբինատին անսահմանափակ կերպով էներգիա էր մատակարարվում, նրանք լրիվ չէին ստանում «Հայէներգո»-ի կողմից բաց թողնվող էլեկտրաէներգիան, էլ չենք ասում, որ կոմբինատը, ունենալով բոլոր հնարավորությունները, չկատարեց ցիանամիդի և նրանից մշակվող այլ նյութերի արտադրության պլանը։

Կոմբինատի և շինարարական տրեստի ղեկավարությունը պետք է ապահովի ազոտային պարարտանյութերի արտադրության համար նախատեսվող այն կորպուսների շինարարության ավարտումը, որոնք ծրագրվում է շահագործման հանձնել ընթացիկ տարում։

Շինարարական աշխատանքները պետք է կազմակերպվեն, հաշվի առնելով այն, որ Կառավարությունը



պլանավորել է շահագործման հանձնվող ցեխերից արտադրանք ստանալ արդեն ընթացիկ տարվա երկրորդ կեսից սկսած։

Կիրովի անվան գործարանում ձեռք բերված հայտնի հաջողություններից հետո, որոնց մասին նշվեց Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում, գործարանը վատացրեց աշխատանքը և 1950 թվականի պլանը կատարեց միայն 94,6 տոկոսով։

Պլանի թերակատարումը բացատրըվում է նոր տեխնոլոգիայի յուրացման ձգձգումով և թողարկվող նոր արտադրանքի տեխնիկական պայմանների հաճախակի փոփոխմամբ։

Գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողները գլխավոր ինժեներ ընկ. Տեր-Ղազարյանի գլխավորությամբ, Լենինգրադի գիտա-հետազոտական քիմիական ինստիտուտի հետ միասին մշակել և առաջարկել են բարձրորակ հիմնական արտադրանքի չափազանց արժեքավոր տեխնոլոգիա։ Սակայն պետք է նշել, որ առաջարկության հեղինակներն անբավարար չափով էին մշակել նոր

տեխնոլոգիայի առանձին օպերացիաներ, որը դարձավ նեղ տեղ և այդ տեխնոլոգիայի յուրացումը ձգձգելու պատճառ հանդիսացավ։

Գործարանի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը պարտավոր են ինժեներա-տեխնիկական աշխատողների ուշադրությունը և ջանքերը կենտրոնացնել տեխնոլոգիայի այն հարցերի ամենաարագ լուծման վրա, որոնք դեռ լրիվ չեն մշակված։

Միաժամանակ պետք է խստագույն տեխնոլոգիական կարգապահություն պահպանվի արտադրանքի նոր տեսակը յուրացնելու գործում։

Գործարանի պարտիական կազմակերպության և ամբողջ կոլեկտիվի պատվի խնդիրն է գործարանն արագ կերպով դուրս բերել ճեղքվածքից և վերականգնել նրա նախկին փառքը։

Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում քննադատվելուց հետո զգալիորեն բարելավել է իր աշխատանքը Երևանի ավտոդողերի գործարանը։ Գործարանի դիրեկտոր ընկ. Բոյախչևը և պարտիական կազմա-



կերպության քարտուղար ընկ. Դրամփյանը ճիշտ ըմբռնեցին քննադատությունը, գլխավորեցին տեխնիկական կատարելագործումների և ռացիոնալիզատորական առաջարկների արմատավորումը, որոնց նպատակն է առավելագույն չափով օգտագործել սահմանված ագրեգատների կարողությունները և ավելացնել համախառն արտադրանքի թողարկման ծավալը։

Այդ բանի հետևանքով գործարանը 1950 թվականի պլանը կատարեց 118 տոկոսով, ավտոդողերի թողարկումը 1948 թվականի համեմատությամբ ավելացնելով 50 տոկոսով և, այդպիսով, գերազանցելով հնգամյա պլանի առաջադրանքը, թողարկելով գերազանցապես առաջին տեսակի արտադրանք ու խիստ բարելավելով գործարանի որակական մյուս ցուցանիշները։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն արտադրանքի նոր տեսակների թողարկման հարցերին, բանվորների ուշա-

դրությունը մոբիլիզացնելով յուրացման ժամկետները կրճատելու և որակյալ արտադրանք տալու վրա։

Մեր առջև խնդիր է կանգնած՝ ժամանակին ավարտել ընթացիկ տարում թողարկելիք օբեկտները և նշված ժամկետներին շահագործման հանձնել պոլիվինիլացետատի գործարանը, դրանուլացված սուպերֆոսֆատի արտադրության ցեխը՝ Ալավերդու քիմիական գործարանում և ազոտային պարարտանյութերի ցեխը՝ Կիրովականի քիմիական կոմբինատում։

Հաշվետու ժամանակաշրջանում հաջողությամբ է կատարվել Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի ցուցումը մեքենաշինությունն ամեն կերպ զարգացնելու մասին։

Արտադրության 1950 թվականի պլանը կատարված է 109,5 տոկոսով, ըստ որում համախառն արտադրանքի թողարկումը 1948 թվականի համեմատությամբ ավելացել է համարյա երեք անգամ։

Միութենական կառավարությունը մեծ օգնություն ցույց տվեց Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի



և կաբելի գործարանի ընդարձակման հարցում։

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշմամբ սահմանված է այդ գործարանների պրոֆիլը և համապատասխանորեն մեծացված են կապիտալ ներդրումների պլանները։

1950 թվականին գեներատորներ արտադրված են 282 հազար կիլովատ գումարային կարողությամբ, 1948 թվականի մակարդակը գերազանցելով 5,6 անգամ։

Տրանսֆորմատորներ 1950 թվականին արտադրվել են 609 հազար կիլովատ-ամպեր ընդհանուր կարողությամբ, որը 1948 թվականի մակարդակը գերազանցում է 2,2 անգամ։

Գործարանը վերացրել է նախկինում նշված թերությունները, ստեղծել է ռիթմիկ աշխատանք և կոլեկտիվին մոբիլիզացրել է նոր առաջադրանքների կատարման համար։ Այս գործում ոչ փոքր դեր խաղաց գործարանի դիրեկտոր ընկ. Գ. Տ. Զոլախյանը, որը մեծ հմտությամբ ղեկավարում է Հայաստանի ամենախոշոր մեքենաշինական գործարանը։

Ուզում եմ հատկապես նշել այդ գործարանի կոլեկտիվի և կոնստրուկտորներ ընկ. ընկ. Վ. Ս. Ալեքսեևսկու, Ս. Օ. Եղիյանի, Յու. Խոջոյանի լավ աշխատանքը էլեկտրավարի և գյուղատնտեսական այլ աշխատանքների համար շարժական էլեկտրա-ինքնակայանների երեք փորձնական նմուշների կատարելագործման ու թողարկման ուղղությամբ, որոնք լրիվին ապահովում են աշխատանքի անվտանգությունը, սպասարկող անձնակազմի հուսալի պաշտպանությունը բարձր լարման հոսանքներից և կառավարման ավտոմատացումը։

Պատրաստված օրինակները փորձարկման համար ուղարկված են Մոսկվա և պետք է հուսալ, որ դրանք Կառավարության կողմից կընդունվեն ու դրանց սերիական արտադրությունը կկազմակերպվի Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանում։

Շարունակում են ետ մնալ Մեքենաշինության և գործիքաշինության մինիստրության հիդրոտուրբինների գործարանը (դիրեկտոր ընկ. Հախնազարով), կոմպրեսորների գործարանը



(դիրեկտոր ընկ. Հարությունյան), ժամացույցի գործարանը (դիրեկտոր ընկ. Հարությունյան)։

Այս ձեռնարկությունները թեև համախառն արտադրանքի 1950 թվականի պլանը կատարեցին, սակայն այդ բոլոր գործարաններն էլ թերակատարել են հիմնական արտադրանքի պլանը. հիդրոտուրբինների գործարանը պակաս է տվել հիդրոտուրբիններ, կոմպրեսորների գործարանը՝ կոմպրեսորներ, իսկ ժամացույցի գործարանը՝ ժամացույցներ։ (Ծիծաղ)։

Այս ձեռնարկությունների դիրեկտորները շարունակում են խախտել Կառավարության այն ցուցումը, որ համախառն արտադրանքի պլանի կատարման հետ միաժամանակ պարտադիր է նոմենկլատուրայի պլանների կատարումը։ Այս ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները և պարտիայի ռայոնական կոմիտեները հաշտվում են այդ դրության հետ, կարգի չեն հրավիրում նման ղեկավարներին և չեն հաստատում պետական ամուր կարգապահություն։

Մեքենաշինական գործարանների մեծ մասում՝ հիդրոտուրբինների գործարանում, մեքենաշինական գործարանում և նույնիսկ Ձերժինսկու անվան գործարանում թերություն են հանդիսանում ցածր արտադրական կուլտուրան, սահմանված կարողությունների ոչ-լրիվ օգտագործումը, անբավարար աշխատանքը սովետական մեքենաշինության ու գազդահաշինության առաջավոր բանվորների փորձը տարածելու ուղղությամբ և թույլ աշխատանքը բանվորների տեխնիկական մակարդակի բարձրացման ասպարեզում։

Հետագայում հարկավոր է վերացնել այդ թերությունները, ավելի մեծ ուշադրություն նվիրել հետ մնացող ձեռնարկություններին և ամրացնել պետական կարգապահությունը առաջին հերթին այդ ձեռնարկությունների ղեկավար աշխատողների մեջ։

1949—1950 թվականների ընթացքում թեթև արդյունաբերության ճյուղերը նույնպես շարունակում էին զարգանալ։ Հատկապես զարգացան տեքստիլ արտադրությունը, սննդ-



համի, մսեղենի-կաթնեղենի ձեռնարկությունները, մասսայական սպառման արդյունաբերական ու պարենային ապրանքներ արտադրող ձեռնարկությունները։

Վերջին տարիների ընթացքում թեթև արդյունաբերության ձեռնարկությունները կազմակերպեցին բրդյա, բամբակյա, մետաքսյա գործվածքների, տրիկոտաժեղենի և գուլպա-նասկեղենի ավելի բարձրորակ տեսակների արտադրությունը։

Ընդարձակվել է հացի-բուլկեղենի և հրուշակեղենի, սեղանի գինիների ու կոնսերվների ասորտիմենտը։ Մեծ չափով բարելավվել է երշիկեղենի որակը և լայնացել է նրա ասորտիմենտը։ Ավելացել է պանրի և կենդանական յուղի արտադրությունը մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունների կողմից։

Աշխատանքը բարելավել են նաև տեղական արդյունաբերությունն ու արհեստագործական կոոպերացիան, որոնք կատարեցին 1950 թվականի պլանները։

1951 թվականին նախատեսված է

շահագործման հանձնել հետևյալ նոր
ձեռնարկությունները.

**թեթև արդյունաբերության գծով—**
նուրբ մահուդի գործվածքների կոմբի-
նատը՝ կոստյումացու բարձրորակ
բրդյա գործվածքների արտադրության
համար, մետաքսյա գործվածքների
ֆաբրիկան՝ Բերիայի անվան շրջա-
նում և Լենինականի տեքստիլ կոմբի-
նատի ներկման ֆաբրիկան.

**սննդարդյունաբերության գծով—** Ե-
րևանի կոնյակի և գարեջրի գործա-
րանները, Աշտարակի «Խերես» գինու
գործարանը, ադամանդի գինիների գոր-
ծարանը՝ Կոտայքում և հացի գործա-
րանը՝ Կիրովականում.

**մսեղենի-կաթնեղենի արդյունաբե-
րության գծով—** Երևանի սառցարան
կոմբինատը՝ լրիվ կարողությամբ,
պաղպաղակի ֆաբրիկաները, կաթի
գործարանները՝ Լենինականում, Կի-
րովականում և այլ շրջաններում,
պանրագործարանները ինը շրջաննե-
րում, բացի վերջին տարիների ըն-
թացքում շահագործման հանձնված
յուղի-պանրի 19 մեքենայացված գոր-
ծարաններից։



Թվարկված ձեռնարկությունները
շահագործման հանձնելով և գոյու-
թյուն ունեցող ձեռնարկությունների
ընդարձակմամբ՝ լայն սպառման մը-
թերքների ու ապրանքների թողարկու-
մր կապահովի ռեսպուբլիկայի բնակ-
չության աճող պահանջները։

Արդյունաբերության այդ ճյուղերի
հիմնական խնդիրն է՝ հետագա աշխա-
տանքում խիստ կերպով բարելավել
թողարկվող արտադրանքի որակը և
ընդարձակել տեսականին։

Թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղե-
նի, անտառային, տեղական ար-
դյունաբերության և արհեստագործա-
կան կոոպերացիայի ձեռնարկություն-
ների աշխատանքի հիմնական ու գլ-
խավոր թերությունը շարունակում է
մնալ թողարկվող արտադրանքի ցածր
որակը, որը չի բավարարում բնակչու-
թյան աճած պահանջները։

Թեթև արդյունաբերության մինիստ-
րության տրիկոտաժեղենի ձեռնարկու-
թյունների արտադրանքի միայն 58
տոկոսն է առաջին տեսակի՝ պլանով
նախատեսված 80 տոկոսի փոխարեն։

Կոշկեղենի ֆաբրիկաները խիստ

կերպով թերակատարում են պլանա-յին առաջադրանքը տեսակների գծով և շարունակում են ցածրորակ կոշկե-ղեն արտադրել: Չեն բարելավել ի-րենց աշխատանքը նաև կարի ձեռ-նարկությունները:

Թողարկվող արտադրանքի որակի տեսակետից դրությունն ավելի լավ չէ սննդի արդյունաբերության ձեռնար-կություններում: Անհրաժեշտ է, որ խիստ կերպով բարելավվի փաթեթու-մը և արտաքին ձևավորումը:

Անտառային ու տեղական արդյու-նաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունները մինչև այժմ չեն կազմակերպել միջին գնի լավորակ կահույքի արտադրու-թյունը: Նրանք լավ որակով են ար-տադրում թանկարժեք կահույքը, իսկ մասսայական սպառման համար նա-խատեսված կահույքն արտադրվում է սահմանափակ քանակությամբ և խիստ ցածր որակով: Այդպիսի կա-հույքը պատրաստվում է թաց, չչո-րացված, վատորակ փայտեղենից, և գնելուց հետո շատ շուտով անպետ-քանում է, առաջացնելով գնորդի ար-



դարացի դժգոհությունը Անտառային արդյունաբերության ու Տեղական ար-դյունաբերության մինիստրություննե-րի և այլ կազմակերպությունների աշ-խատանքից:

Այդ մինիստրությունների առջև խնդիր է կանգնած՝ լրացնել կահույքի ձեռնարկությունների սարքավորումը, բոլոր ձեռնարկություններում անպայ-ման կազմակերպել փայտեղենի չո-րացումը, անցնել ոչ-թանկարժեք, բայց որակյալ, լավ հարդարված կա-հույքի մասսայական արտադրությա-նը:

Ցածրորակ արտադրանքի թողարկ-ման փաստեր կան տնային գործա-ծության և մասսայական սպառման առարկաներ արտադրող համարյա բո-լոր ձեռնարկություններում:

Իսկ ո՞րն է որակի ասպարեզում ձեռնարկությունների այդպիսի վատ աշխատանքի պատճառը:

Հիմնական պատճառը պետք է ո-րոնել այն բանի մեջ, որ կադրերը բավարար չափով չգիտեն արտադրու-թյան տեխնոլոգիան: Այդ ձեռնարկու-

թյունների մեծ մասում չկան տեխնիկապես գրագետ կադրեր։

Սննդի, Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում և Թեթև արդյունաբերության մինիստրության կարի, կոշկեղենի ու տրիկոտաժեղենի ձեռնարկություններում համարյա թե չկան բարձր որակավորում ունեցող ինժեներներ, տեխնոլոգներ, որոնք կարողանան ապահովել արտադրության տեխնիկական ղեկավարությունը։ Բավական է բերել մի օրինակ Անտառային արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններից, որտեղ ինժեներա-տեխնիկական պաշտոններ գրավող 81 աշխատողներից մասնագիտական կրթություն ունեն միայն ութ մարդ։

Եթե մենք ուզում ենք բարելավել թողարկվող արտադրանքի որակը, ապա պետք է ձեռնամուխ լինենք որակյալ կադրերի պատրաստմանը, և յուրաքանչյուր մինիստրություն պետք է ապահովի անհրաժեշտ թվով մասնագետների պատրաստումը արդյունաբերության իր ճյուղի համար։



Մեր արդյունաբերության աճման հետ միասին անհամեմատ աճել են ապրանքների երկաթուղային և ավտոտրանսպորտային փոխադրումները։ Տարեցտարի ավելանում են երկաթուղային փոխադրումների պլանները։

Հաշվետու ժամանակաշրջանում իր աշխատանքը զգալիորեն բարելավել է Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը, որը 1950 թվականին բեռնման պլանը կատարեց 105,3 տոկոսով, 1948 թվականի համեմատությամբ տալով 39 տոկոս աճ։

Բեռնաթափման պլանը 1950 թվականին կատարվեց 103,1 տոկոսով, որը 1948 թվականի համեմատությամբ տալիս է աճ 30,8 տոկոսով։ Բարելավվել է նաև շոգեքարշա-շարժական կազմի օգտագործումը։ Վերջին ժամանակներս ղեկավարությունն զգալիորեն ամրացել է փորձված կադրերով, շոգեքարշայինների մեջ աչքի են ընկել նորարարների կադրեր, որոնք լավ աշխատանք են ցույց տալիս և օրինակ են ծառայում ուրիշների համար։ Կարելի է հիշատակել ընկերներ Գ. Մ.

Մրաչյանին, Ա. Մ. Խաչատրյանին, Մ. Ն. Աբուլովային, Կ. Օ. Կորկոտյանին, Ս. Կ. Հարությունյանին, Գ. Ա. Գևորգյանին, Գ. Ի. Տաղատելովին և ուրիշների։

Չնայած բաժանմունքի աշխատանքի ընդհանուր բարելավմանը, Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարին նշած որոշ թերություններ դեռ շարունակում են գոյություն ունենալ։ Չեն կատարվում վագոնների շրջապտույտի նորմաները, շարունակվում է գնացքների առաքման գրաֆիկի խախտումը, դեռ շարունակում են տեղի ունենալ աշխատանքային կարգապահության խախտումներ և խոտան՝ աշխատանքի մեջ, որոնց հետևանքն են վնասները և երկաթուղային տրանսպորտի նորմալ աշխատանքի խանգարումը։

Բաժանմունքի ղեկավարությունը՝ ընկ. Նավասարդովը և ընկ. Երզնկյանը, քաղբաժնի պետ ընկ. Ամատունին պետք է ապահովեն այդ թերությունների արագ վերացումը և երկաթուղային տրանսպորտի աշխատանքի ցուցանիշների հետագա բարելավումը։

Ես խոսեցի արդյունաբերության



հիմնական ճյուղերի աշխատանքի վիճակի մասին, որից կարելի է անել այսպիսի հետևություններ.

Հաշվետու տարիների ընթացքում Հայաստանի արդյունաբերությունը զարգացել է արագ տեմպերով, ավելացնելով համախառն արտադրանքի թողարկումը ինչպես նոր ձեռնարկությունները շահագործման հանձնելու և գոյություն ունեցող ձեռնարկությունների ընդարձակելու, այնպես էլ, գլխավորապես, եղած կարողությունների յուրացման, նոր տեխնիկայի արմատավորման և ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման հաշվին։

Հայաստանի արդյունաբերության զարգացման մեջ բնորոշ է ծանր արդյունաբերության աճը տեղական հումքային ու էներգետիկ ռեսուրսների բազայի վրա։

Մեր խնդիրն է՝ շարունակել մետալուրգիական ու քիմիական արդյունաբերության, մեքենաշինության հետագա ընդարձակումը, ինչպես նաև ամեն կերպ ընդարձակել էներգետիկ բազան՝ էլեկտրաէներգիայի մատակա-

լարման ապարեզում ժողովրդական տնտեսության կարիքներն անընդմեջ կերպով բավարարելու համար։

Թեթև արդյունաբերության ճյուղերի զարգացումը կատարվել է տեղական գյուղատնտեսական հումքի՝ բամբակի, ծխախոտի, ճակնդեղի, խորդենու, մետաքսի, բրդի, կաշվի, մսեղենի ու կաթնեղենի, խաղողի ու պտղաբանջարային կուլտուրաների վերամշակման ուղղությամբ։

Այդ հումքը վերամշակող արդյունաբերության ծավալը, կառուցվող ձեռնարկությունների հետ միասին, հասնում է այնպիսի չափերի, երբ պարտիական, . սովետական ու տնտեսական կազմակերպությունների մոտակա տարիների խնդիրն է դառնում ոչ թե արտադրանքի հետագա ավելացումը, այլ թողարկվող արտադրանքի որակի խիստ բարելավումը և արտադրության կուլտուրայի բարձրացումը։

Այս խնդիրների հաջող լուծումը պարտիական կազմակերպություններից պահանջում է ավելի մեծ ուշադրություն նվիրել բարձր որակավորում ունեցող կադրերի պատրաստման



հարցերին՝ արդյունաբերության բոլոր ճյուղերը մասնագետներով լիովին ապահովելու համար։

Պարտիական կազմակերպությունները պետք է սիստեմատիկաբար աշխատեն բանվորների տեխնիկական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ, ամեն կերպ կրճատելով նոր տեխնիկան և արտադրանքի նոր տեսակների թողարկման տեխնոլոգիան նրանց կողմից յուրացվելու ժամկետները։

Ամեն կերպ պաշտպանելով արտադրության նորարարների նախաձեռնությունը, պարտիական կազմակերպությունները պետք է կազմակերպեն արտադրության առաջավորների փորձի ուսումնասիրությունը, տարածումն ու արմատավորումը, պայքար մղելով այդ գործում դանդաղկոտության և բյուրոկրատիզմի երևույթների դեմ։

Սոցիալիստական մրցությունը պետք է ուղղված լինի այն բանին, որ ձեռնարկությունների բոլոր բանվորները հասնեն արտադրության առաջավոր նորարարների ցուցանիշներին։

Արդյունաբերության հիմնական ճյուղերում կապիտալ ներդրումները տարեցտարի աճելու կապակցությամբ, մասնավորապես այն կապակցությամբ, որ կապիտալ ներդրումները Հայաստանում 1951 թվականին հասցվում են մինչև 850 միլիոն ռուբլու՝ անցյալ տարի եղած 670 միլիոն ռուբլու փոխարեն, մենք պետք է իրականացնենք կապիտալ խոշոր աշխատանքներ մետալուրգիական և քիմիական արդյունաբերության մեջ, մեքենաշինության և էներգոտնտեսության գծով, որոնք մեզանից կպահանջեն օգնություն ինչպես բանվորական ուժով, այնպես էլ տեղական շինանյութերով ապահովելու ասպարեզում։

Պարտիական և սովետական կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացված լինի շինարարական մեխանիզմների լրակատար օգտագործման և շինարարական աշխատանքների հստակ կազմակերպման վրա։



## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հաշվետու ժամանակաշրջանում գյուղատնտեսության հետագա աճ է տեղի ունեցել այնպես, ինչպես որ արդյունաբերության բնագավառում։ Այդ աճը կատարվել է գյուղատնտեսության համարյա բոլոր ճյուղերում համախառն արտադրանքն ավելանալու գծով։

1949—1950 թվականներին ռեսպուբլիկայում ցանքատարածությունը համարյա չաճեց, եթե չհաշվենք առանձին կուլտուրաների ցանքատարածության չափերի փոփոխությունը։ Կերի խոտաբույսերի ցանքատարածությունն աճեց 49,1 տոկոսով և տեխնիկական կուլտուրաներինը՝ 3,6 տոկոսով, հացահատիկային ցանքատարածությունների կրճատման հաշվին։

Գյուղատնտեսական արտադրանքի ավելացումը ձեռք է բերվել գլխավորապես ի հաշիվ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման։

Գյուղատնտեսության վիճակի ցու-

ցանիշները վկայում են, որ պարտիական կազմակերպությունները հաջողությամբ են լուծել գյուղատնտեսության բնագավառում Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի առաջադրած խնդիրը՝ մոտակա տարիներին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը կրկնապատկելու վերաբերյալ։

Աշխատանքի երկու տարվա արդյունքները ցույց են տալիս, որ արդեն խոշոր քայլ է կատարված համագումարի այդ կարևոր որոշումը իրականացնելու գործում։

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումն ուժեղացնելու և այդ աշխատանքների կատարման ժամկետները կրճատելու հնարավորության կապակցությամբ, ինչպես նաև ագրոտեխնիկայի կիրառումը բարելավելու հետևանքով պարտիական կազմակերպությունները գյուղատնտեսության ղեկավարման ուղղությամբ իրենց հետագա աշխատանքում պետք է հասնեն բերքատվության բարձրացման տեմպերի արագացմանը և այն բանին, որ մո-



տակա տարիների ընթացքում անպայման կատարվի 14-րդ համագումարի դիրեկտիվը՝ առանց բացառության բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը կրկնապատկելու վերաբերյալ։

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը ընկեր Ստալինի ցուցումով 1950 թվականի մայիսի 30-ին քննության առավ Հայկական ՍՍՌ-ում ցորենի արտադրությունն ավելացնելու հարցը և ռեսպուբլիկայի առջև խնդիր դրեց մոտակա տարիներին ավելացնել ցորենի արտադրությունը՝ հացի մեր պահանջը սեփական արտադրության հաշվին ապահովելու համար։

Չնայած այն բանին, որ հացահատիկի համախառն բերքն ավելանալու կապակցությամբ հացամթերումները սիստեմատիկաբար աճում են, 1950 թվականին հացամթերումների հաշվին բավարարվեց ռեսպուբլիկայի քաղաքների հացի պահանջի և մի քանի տեխնիկական ու թանկարժեք կուլտուրաների արտադրությունների կարիքների միայն 30 տոկոսը։ Պահանջի մնացած 70 տոկոսը ապահով-

վեց Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներից ցորեն ներմուծելու հաշվին։

Ռեսպուբլիկայի հացի պահանջը սեփական արտադրության հաշվին ապահովելու համար անհրաժեշտ է հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը կոլխոզներում 280 հազար հեկտարից մինչև 1957 թվականը հասցնել 460 հազար հեկտարի, որից 400 հազար հեկտարը ցորենի ցանքերի համար, իսկ բերքատվությունը 1957 թվականին պետք է հասցվի հեկտարից մինչև 22—25 ցենտների։

1950 թվականի աշնանից ռեսպուբլիկայի կոլխոզները ձեռնամուխ են եղել հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման ընդունված պլանի իրականացմանը, և աշնանացանի տարածություններն արդեն ավելացրել են 30 հազար հեկտարով։

1951 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը ծրագրվում է ավելացնել 40 հազար հեկտարով։

Վարելահողերի տարածության ըն-



դարձակումը 150 հազար հեկտարով կկատարվի ի հաշիվ նվազ խոտավետ արոտավայրերի հերկման՝ 44 հազար հեկտար տարածությամբ, ամառային արոտավայրերի հերկման՝ 52 հազար հեկտար տարածությամբ, թփուտների արմատահանման ու հերկման՝ հազար հեկտար տարածությամբ և նոր ոռոգվող հողերի յուրացման՝ 53 հազար հեկտար տարածությամբ։

Բերքատվությունը բարձրացնելու համար ցորենի ամբողջ ցանքատարածությունները պարարտացվում են հանքային պարարտանյութերով։ Հանքային պարարտանյութերով արդեն պարարտացված է 9.000 հեկտար աշնանացան։

Հունվար-մարտ ամիսների համար առանձնացվել էր 54 հազար տոննա հանքային պարարտանյութ աշնանացանի սնուցման և գարնանացան ցորենի ցանքատարածությունները պարարտացնելու նպատակով։

Նոր, անցյալում չյուրացված հողերը ժամանակին գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցնելու համար նախատեսված է անցկացնել ո-

ոռոգիչ ջրանցքներ, կառուցել ջրհաններ և ցամաքեցնել ճահճակալած հողերը։ Նախատեսված է նաև ներմուծել պահանջվող քանակությամբ տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Այսպիսով, Հայաստանի գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր խնդիրներից մեկն է պայքարը ցորենի համար։

Այս հարցի վրա պետք է բևեռված լինի պարտիական ու սովետական կազմակերպությունների, ինչպես նաև կոլխոզների ուշադրությունը։

Այս խնդրի հաջող լուծման համար անհրաժեշտ է հաստատակամություն, ձեռներեցություն և նշված աշխատանքների ժամանակին կատարում։

Սակայն, պետք է ասել, որ մի շարք շրջաններ միանգամայն ոչ լուրջ մոտեցում ունեցան աշնանացանի պլանի կատարմանը։ Սիսիանի շրջանը տարեկանի ցանք կատարել է 5.274 հեկտար տարածության վրա, պլանով նախատեսված 1.500 հեկտարի փոխարեն։ Շրջկոմի քարտուղար ընկ. Հայրապետյանը և շրջգործկոմի նա-



խագահ ընկ. Մելոյանը ինքնագլուխ կերպով թույլ են տվել ցորենի ցանքի պլանի կրճատում 3.774 հեկտարով։

Մարտունու շրջկոմի քարտուղար ընկ. Գևորգյանը և շրջգործկոմի նախագահ ընկ. Հովհաննիսյանը չեն ապահովել ցորենի ցանքի կառավարական պլանի կատարումը, թույլ են տվել ցորենի ցանքատարածության կրճատում և ցանել են 1.682 հեկտար տարեկան։

Ցորենի ցանքի պլանի ճշգրիտ կատարումը չեն ապահովել նաև Նոր Բայազետի, Իջևանի, Նոյեմբերյանի և Շամշադինի շրջանները, որտեղ ցորենի ցանքի կրճատման հաշվին ավելացվել է գարու ցանքատարածությունը, իսկ Ազիզբեկովի, Ղուկասյանի և Ղափանի շրջանները չեն կատարել ցորենի աշնանացանի առաջադրանքները։

Պետք է հույս ունենալ, որ վերոհիշյալ շրջանների պարտիական օրգանները քննության կառնեն այս հարցերը և դրանք կգնահատեն որպես Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 6-րդ պլենումի որոշման չկատարում,

իսկ հետագայում թույլ չեն տա կառավարական պլանների այդպիսի ինքնագլուխ վերանայում։

Չի կարելի չնշել ցորենի ցանքի համար պիտանի հողամասերի առանձնացման ուղղությամբ Գյուղատնտեսության մինիստրության աշխատանքում եղած դանդաղկոտությունը, որի հետևանքով մինչև այժմ ըստ շրջանների ու կոլխոզների դեռ կազմված չէ որոշ գյուղատնտեսական կուլտուրաներ ցածրադիր գոտիներից ավելի բարձրադիր գոտիները փոխադրելու կոնկրետ պլան, այդ հողերը ցորենի ցանքի համար ազատելու նպատակով։

Գյուղատնտեսության մինիստրությունը նաև ձգձգում է արոտավայրերըն ու խոտհարքները հերկելու սկրզբնական պլանի վերանայումը այն կապակցությամբ, որ հնարավորություն է ստեղծվել յուրացնելու ամառային արոտավայրերի մի մասը։

Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է վերացնի այս թերությունները ու մինչև աշնանացանի համար հերկ կատարելու սկիզբը կոլ-



խոզներին ցույց տա այն հողամասերը, որոնք հերկման են ենթակա 1951 թվականի գարնանն ու աշնանը։

Հայաստանի կոմպարտիայի 14-րդ համագումարը խնդիր դրեց բարելավել սերմնաբուծական տնտեսությունն այն հաշվով, որ 1949 թվականից սկսած ապահովվի հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքը սորտային սերմերով։

Վերջին երկու տարվա ընթացքում զգալի աշխատանք է կատարված տեսակավոր սերմերով հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները ընդարձակելու ուղղությամբ։ 1950 թվականին տեսակավոր սերմերով կատարված հացահատիկային ցանքերը կազմեցին 97,6 տոկոս և այդպիսով ռեսպուբլիկան համարյա թե անցավ հացահատիկային կուլտուրաների համատարած ցանքին՝ տեսակավոր սերմերով։ Ներկայումս շրջանային սերմնաբուծական տնտեսությունների թիվը հասել է մինչև 32-ի և էլիտային-սերմնաբուծական տնտեսությունների թիվը՝ 4-ի։ Բազարգեչյա-

րի շրջանում կգործի Լենինականի սելեկցիոն կայանի ֆիլիալը։

Սակայն նկատի ունենալով ցորենի արտադրությունն ավելացնելու բնագավառում մեր առջև դրված նոր խնդիրները՝ այս աշխատանքը բավարար համարել չի կարելի։

Մեր գիտա-հետազոտական հիմնարկների և պետական սելեկցիոն կայանի առջև խնդիր դրվեց աճեցնել ցորենի նոր, բարձր բերքատու, ցրտակայուն սորտեր այն կապակցությամբ, որ անհրաժեշտ է այդ կուլտուրան տեղաշարժել դեպի ավելի բարձր գոտիները, սակայն այդ աշխատանքը նույնպես իրականացվում է դանդաղ տեմպերով։

Բավական է ասել, որ մարտ ամսին, լեռնային շրջաններում ցանքն սկսելու նախօրյակին գիտա-հետազոտական հիմնարկները դեռ չեն ստեղծել իրենց հենակետերը այդ կարևորագույն խնդրի կատարման համար, իսկ Գիտությունների ակադեմիայի Գենետիկայի ու սելեկցիայի ինստիտուտը ցորենի նոր տեսակների աճեցման աշխատանքը կատարում է



ռեսպուբլիկայի միայն ցածրադիր գոտում։

Գյուղատնտեսության մյուս հարցը, որ հատուկ ուշադրություն է պահանջում իր նկատմամբ, բամբակի համախառն արտադրանքի հետագա ավելացումն է։ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշմամբ բամբակի ցանքատարածությունը մոտակա տարիների ընթացքում մնում է 1950 թվականի մակարդակի վրա, այսինքն՝ 17 հազար հեկտար, իսկ բամբակի հումքի բերքատվությունը 1955 թվականին պետք է հասցվի հեկտարից մինչև 27—29 ցենտների։

Այս կապակցությամբ մեծանում է աշխատանքների մեխանիզացիան բամբակագործության ասպարեզում։ Հիմնական աշխատանքների մեխանիզացիան հասցվելու է մինչև 100 տոկոսի, իսկ մեքենաներով կատարվող բերքահավաքը՝ մինչև 70 տոկոսի։

Կառավարությունը ագրոտեխնիկան բարելավելու, հանքային պարարտանյութերի ներմուծումն ավելացնելու և բամբակենու ոռոգման կատարելագործված սիստեմն արմատավորելու

ուղղությամբ մի շարք միջոցառումներ է նշել, որոնք ապահովում են բամբակի այդպիսի բարձր բերքի ստացումը։ Այդ աշխատանքները վատ չեն ծավալվում։

Բամբակի բերքատվության բարձրացման խնդիրը հաջող են լուծում Հոկտեմբերյանի և Արտաշատի շրջանների կոլխոզները, որոնք 1949—1950 թվականներին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացան 25—26 ցենտներ բերք՝ 1940 թվականի 17—20 ցենտների դիմաց։

Էջմիածնի շրջանի կոլխոզները, երկար ժամանակ առաջավոր շրջաններից ետ մնալուց հետո, 1950 թվականին հասան բամբակի բերքատվության զգալի բարձրացման, հեկտարից ստանալով 23,5 ցենտներ բերք։ Աշխատանքը բարելավել են նաև Ղանգիբասարի շրջանի կոլխոզները, որոնք 1950 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացան 21,3 ցենտներ բերք։ Բերքատվության տեսակետից շարունակում են ետ մնալ Վեդու շրջանի կոլխոզները։ Թեև 1950 թվականին նրանք կատարեցին պետության



բամբակ հանձնելու պլանը, սակայն յուրաքանչյուր հեկտարից հանձնեցին միայն 16,7 ցենտներ։

Բերքատվության հետագա բարձրացման գործում կարևոր հարց է սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքի բարելավումը բամբակի գծով և այնպիսի սորտի աճեցումը, որն աչքի ընկնի բերքատվությամբ, վաղահասությամբ և հիվանդությունների դեմ դիմացկունությամբ, իսկ մազմզուկի երկարությամբ համապատասխանի Լենինականի տեքստիլ կոմբինատի պահանջներին։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Բամբակագործության գլխավոր վարչությունը և Տեխնիկական կուլտուրաների ինստիտուտը պետք է ուժեղացնեն իրենց սելեկցիոն սերմնաբուծական աշխատանքը բամբակի գծով և հասնեն արդյունաբերության կողմից պահանջվող սորտի աճեցմանը։

1949—1950 թվականներին տեղի էր ունենում հանրային անասնաբուծության հետագա աճ։

Առ 1-ն հունվարի 1951 թվականի

վիճակով խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է 9,7 տոկոսով, ըստ որում կովերինը՝ 20,2 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 16,2 տոկոսով, խոզերինը՝ 50,0 տոկոսով, ձիերինը և ջորիներինը՝ 15,7 տոկոսով, իսկ թռչունների գլխաքանակը կոլխոզային ֆերմաներում համարյա կրկնապատկվել է։

Եթե հաշվետու ժամանակաշրջանում դաշտավարությունը բնութագրվում է համախառն արտադրանքի աճմամբ յուրաքանչյուր հեկտարի բերքատվության բարձրացման հաշվին, ապա անասնաբուծության գծով շարունակվում է գլխաքանակի աճը՝ առանց անասնաբուծության մթերատվության նկատելի բարելավման, իսկ կաթնատվության բնագավառում 1948 թվականի համեմատությամբ մենք ունենք նույնիսկ իջեցում 7,4 տոկոսով։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշումը «Անասնաբուծության մթերատվության բարձրացման մասին» և Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի դիրեկտիվը անբավարար են կատարվում։



Յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվության նվազումը նրանով է բացատրվում, որ չի բարելավվել անասունների խնամքը, անասունների կերակրումն անբավարար է և այդ կապակցությամբ ավելացել է կովերի ստերջությունը։ Այսպես, օրինակ, 1950 թվականին կովերի ստերջությունը կազմեց 37 տոկոս, 1948 թվականին եղած 29 տոկոսի դիմաց։ Առանձին շրջաններում՝ Թալինի, Արթիկի, Ալավերդու և մի քանի այլ շրջաններում կովերի ստերջությունը հասնում է 40—50 տոկոսի։

Անասնաբուծության հաջողությունները մեզ մոտ արտահայտվում են միայն անասունների գլխաքանակի աճմամբ, որի վրա իրավացի կերպով մեր ուշադրությունը հրավիրեց Անաստաս Իվանովիչ Միկոյանը 1950 թվականին ընտրողների առաջ ունեցած իր ճառի մեջ, ասելով՝

«Այնպիսի գործում, ինչպիսին է անասնաբուծությունը, հաջողությունները չի կարելի սահմանափակել միայն գլխաքանակի պլանի քանակական կատարումով, որովհետև մեզ

հարկավոր է ոչ թե անասունների գլխաքանակ, այլ նրանց մթերքները՝ միս, կաթ, յուղ և բուրդ»։

Անասնաբուծության մթերատվության այդպիսի հետամնացությունը կարող է վերացվել միայն այն դեպքում, երբ փոխվի կոլխոզների վերաբերմունքը անասունների խնամքի ու կերակրման հարցում, հատկապես մսուրային շրջանում։

Գյուղատնտեսական շրջանների պարտիական ու սովետական կազմակերպությունները պետք է իրենց առջև խնդիր դնեն հաղթահարել ու վերացնել այդ հետամնացությունը կոլխոզներում և գլխավորել հանրային հոտի խնամքի ու կերակրման առաջավոր մեթոդների արմատավորումը, որոնք ապահովում են կաթնատու անասունների մթերատվության անպայման բարձրացումը։

Չնայած վերջին տարիների ընթացքում մեծացել է կոլխոզներում կուտակվող կերի ծավալը, այնուամենայնիվ կերի հարցը շարունակում է մնալ չլուծված և կոլխոզների մեծ մասում խոչընդոտ է հանդիսանում անասունների մթերատվության բարձրացմանը։



1950 թվականին ռեսպուբլիկայի կոլխոզները կուտակեցին 810 հազար տոննա կոշտ կեր, որը (փոխարկվածի հաշվով) կազմում էր յուրաքանչյուր գլուխ խոշոր անասունին միջինը 13 ցենտներ, որից ավելի քան 6 ցենտները կազմում էր ծղոտը, իսկ առանձին շրջաններում և կոլխոզներում դրությունն ավելի վատ է։

Բացահայտորեն անբավարար տեսակարար կշիռ են կազմում հյութալի կերերը, չնայած սիլոսացման մեծ աճին։ Սիլոսը, իբրև կաթնատվությունն ավելացնող կեր, շատ կոլխոզներում տալիս են ոչ թե կովերին, այլ բանող եզներին։ Անհասկանալի է դառնում, թե ի՞նչ կաթնամթերք են սպասում եզներից Ապարանի, Սիսիանի, Ախտայի և մի քանի այլ շրջանների կոլխոզների ղեկավարները, որոնք լայնորեն կիրառում են եզներին սիլոսով կերակրելու պրակտիկան։ (Ծիծաղ)։

Կոլխոզներում անբավարար են զարգացած կերի արմատապտուղների ցանքերը, որոնք կաթնատու անա-

սունների կերակրման գործում կարե-
վոր տարր են հանդիսանում։
Պարտիական և սովետական կազ-
մակերպությունների առջև խնդիր է
կանգնած՝ վերացնել այդ թերությու-
ներն անասնաբուծության ասպարե-
զում, միջոցառումներ նշել և անա-
սունների խնամքն ու կերակրումը
բարելավելու, յուրաքանչյուր կոլխո-
զում կերի ռեսուրսներն ավելացնելու,
ռացիոնալ կերակրում կիրառելու, ա-
մենուրեք հորթերի ձեռքով կերակր-
մանն անցնելու և զոոտեխնիկական
այլ ձեռնարկումների միջոցով ապա-
հովել կովերի կաթնատվության զգա-
լի բարձրացումը։
Կոլխոզային ֆերմաներում շարու-
նակում է ետ մնալ անասունների
ցեղի բարելավման աշխատանքը,
չնայած որ ցեղական անասունների
գլխաքանակը որոշ չափով աճել է։
ՍՍՌ Միության Մինիստրների Սո-
վետը մեր առջև խնդիր դրեց վերաց-
նել քոչվորական ոչխարաբուծության
հետամնաց ձևերը, դադարեցնելով
ձմռան շրջանում անասուններն Ադրր-
բեջանական ՍՍՌ արոտավայրերը



քշելը և Ադրբեջանական ՍՍՌ-ից ա-
նասունները Հայաստանի ամառային
արոտավայրերը քշելը։
Եվ իրոք, անասուններին հեռու
տարածություններ քշելը ոչ միայն
չէր նպաստում ոչխարաբուծության
զարգացմանը, այլ յուրաքանչյուր
տարի կոլխոզներին հսկայական վը-
նասներ էր հասցնում՝ անասունների
մեծ անկման, նրանց վատնման և
մթերատվության մեծ իջեցման, մաս-
նավորապես բրդի կորստի հետևան-
քով։
Այն կոլխոզների ու շրջանային
կազմակերպությունների առաջ, որոնք
անցյալում անասունները քշում էին
ձմեռային արոտավայրերը, խնդիր է
կանգնած՝ կառուցել անհրաժեշտ քա-
նակությամբ փարախներ և անասնա-
բուծական այլ շենքեր, որոնք ապա-
հովեն անասունների ամբողջ գլխա-
քանակի խնամքը մսուրային շրջա-
նում։
Շրջանային կազմակերպություննե-
րի և Գյուղատնտեսության մինիս-
տրության առջև խնդիր է դրվում՝ ա-
վելացնել խոտհնձի և կերի կուտակ-

ման պլանները կոլխոզներում, կոլխոզներին անհրաժեշտ քանակությամբ խոտհարքներ ու արոտավայրեր ամրացնելու պլանները։

Հարկավոր է կոլխոզների հատուկ ուշադրությունը դարձնել բրդի քանակի ավելացման, նրա որակի բարելավման և խուզը ժամանակին կատարելու վրա։

Ցեղական ոչխարաբուծության զարգացման գործում մենք պետք է հասնենք այնպիսի ուղղության, որն ապահովի արդյունաբերության կարիքները կիսանուրբ և կիսակոշտ բրդի հումքով։

Այս տեսանկյունով էլ պետք է վերանայվի ոչխարաբուծության ցեղային շրջայնացման պլանը։

Ցորենի արտադրության ծրագրվող ընդլայնման կապակցությամբ այլ կերպ դրվեց կոլխոզներում խոզաբուծության և թռչնաբուծության զարգացման հարցը։ ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշման համաձայն խոզերի ընդհանուր գլխաքանակը Հայկական ՍՍՌ-ում 1956 թվականի



վերջին պետք է հասցվի մինչև 220 հազար գլխի, իսկ թռչուններինը՝ մինչև 2 և կես միլիոն գլխի։

Այս առաջադրանքի կատարումը առայժմ դանդաղ է ընթանում։ 1950 թվականին խոզերի գլխաքանակը կոլխոզներում հասավ 66,5 հազարի, իսկ թռչուններինը՝ 308 հազարի։

Թռչնաբուծությունն այնպիսի չափերով զարգացնելու համար Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը կազմակերպել է ինկուբատորային 8 կայան, որոնք 1951 թվականին պետք է տան 900 հազար ճուտ։

Շրջանային կազմակերպությունները պետք է ղեկավարեն խոզաբուծության և թռչնաբուծության զարգացման գործը կոլխոզներում, ինչպես նաև կոլխոզնիկների տնտեսություններում։

Առաջին հերթին հարկավոր է կառուցել խոզանոցներ ու թռչնանոցներ՝ ըստ տիպային նախագծերի, հետևել ինկուբատորային կայաններից ճուտերի ստացմանը և փոխադրմանը, կոլխոզներում կազմակերպել կերա-

թույների հատուկ ցանքեր խոզաբուծության ու թռչնաբուծության կարիքների համար, այդ ֆերմաներում աշխատելու նպատակով առանձնացնել առավել փորձված ու գործն իմացող կոլխոզնիկների և անասնաբուծության այդ ճյուղերը դարձնել բարձր եկամտաբեր։

Կոլխոզների վարչությունները, պետությանը միս հանձնելու պլանի կատարումից հետո, պետք է առանձնացնեն կոլխոզնիկներին վաճառելիք մատղաշը։

Հաշվետու ժամանակաշրջանում կատարվել են լայն իռիգացիոն աշխատանքներ։ Շահագործման է հանձնվել Ստալին Զանգվի ջրանցքի առաջին հերթը, որն ապահովեց 5.000 հեկտար նոր հողերի ոռոգումը էջմիածնի շրջանում ու Բերիայի անվան շրջանում, ինչպես նաև ավելացրեց 4.000 հեկտար հողերի ջրապահովումը էջմիածնի շրջանում։

1949 թվականին շահագործման հանձնվեց Կոտայքի բարձր ճնշման կայանը՝ 1.000 հեկտար հողերի ոռոգման համար։ Ավարտված է նաև Ար-



փա լճի ջրամբարի կառուցումը՝ 90 միլիոն խորանարդ մետր ջրատարողությամբ, Շիրակի ոռոգման սիստեմին լրացուցիչ կերպով ջուր տալու համար։ Արարատյան դաշտավայրում, բամբակացան շրջանների տերիտորիայում ցամաքեցված են 3.000 հեկտար նոր հողեր և բարելավված է գոյություն ունեցող ոռոգվող հողերի մելիորատիվ վիճակը 1.300 հեկտար տարածության վրա։

Արագածյանի տափաստանում ցամաքեցված է 1.000 հեկտար հող։

Այս ջրանցքների կառուցման հետ միաժամանակ ռեսպուբլիկայի շատ շրջաններում աշխատանքներ էին կատարվում մանր ջրանցքների անցկացման, ջրամբարների ու նասոսային կայանների շինարարության ուղղությամբ։

Այդ աշխատանքների հետևանքով ոռոգվող հողերի տարածությունը երկու տարվա ընթացքում աճեց 8.800 հեկտարով, իսկ ոռոգվող հողերի ընդհանուր տարածությունը ռեսպուբլիկայում առ 1-ն հունվարի 1951 թվականի հասավ 219 հազար հեկտարի։

Ոռոգման հետագա զարգացումը ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշման համաձայն պետք է ուղղված լինի չօգտագործվող հողերից լրացուցիչ կերպով 53 հազար հեկտար հող գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցնելու նպատակին՝ ցորենի մշակության համար։

Ցորենի արտադրության պլանը կատարելու համար կպահանջվի ոռոգել 73,5 հազար հեկտար տարածություն։ Այդ տարածությունից 30 հազար հեկտարը բաժին է ընկնում Արզնի—Շամիրամ ջրանցքին, որի շինարարությունը կսկսվի ընթացիկ տարում։

Այդ ջրանցքի կառուցումը մեծ նշանակություն ունի Աշտարակի, Կոտայքի, Էջմիածնի շրջանների ու Բերիայի անվան շրջանի գյուղատնտեսության զարգացման համար և կոռոգի Եղվարդի արգավանդ սարահարթը, Արզնու սարահարթն ու Շամիրամի տափաստանը։

Սկսվել է Ստորին Զանգվի ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը՝ 2.500 հեկտար նոր հողերի ոռոգման և



Էջմիածնի ու Հոկտեմբերյանի շրջանների 3.000 հեկտար հողերի ջրամատակարարումն ավելացնելու համար։

Արագ թափով կշարունակվի Թալինի ջրանցքի կառուցումը 12 հազար հեկտար հողերի ոռոգման համար։

Արդեն ավարտված են երկու կիլոմետր երկարությամբ թունելի հորատման ու երեսպատման աշխատանքները և ներկայումս աշխատանքներ են կատարվում ջրանցքի սարալանջային հատվածի երեսպատման ուղղությամբ։

Այսպիսով, ամենից ավելի դժվար աշխատանքներն արդեն ավարտված են և մնում է, որ Ջրային տնտեսության մինիստրությունը 1951 թվականի ընթացքում ավարտի շինարարության աշխատանքներն այն հաշվով. որ 1952 թվականի գարնանից ապահովվի մասնակի ջրամատակարարումը։

Արարատյան դաշտավայրում ցամաքեցման ենթակա 18 հազար հեկտար ընդհանուր հողատարածությունից, ինչպես վերևում ասացի, 3 հազար հեկտարը շահագործման է

հանձնվել, մնացած 15 հազար հեկտարը պետք է ցամաքեցվի մոտակա չորս տարիների ընթացքում։

Այդ նույն ժամանակամիջոցում պետք է ավարտվեն նաև Արազդայանի տափաստանի հողերի ցամաքեցման աշխատանքները։

1951 թվականին պետք է ավարտվեն Նորքի ջրանցքի երկրորդ հերթի շինարարության աշխատանքները՝ 1.000 հեկտար հողերի ոռոգման համար։

Մոտակա երկու տարիների ընթացքում պետք է կառուցվեն նասոսային կայաններ Հոկտեմբերյանի շրջանում՝ 1.000 հեկտար հողերի ոռոգման համար, Արմաշի և Վեդու նասոսային կայանները՝ 2.000 հեկտար հող ոռոգելու համար և Դվինի ջրանցքը Արտաշատի շրջանում՝ 1.000 հեկտար հող ոռոգելու համար։

Միութենական կառավարության որոշմամբ, Հայաստանում ջրտնտեսային աշխատանքների համար կատարվող հատկացումները 1950 թվականին ավելացվեցին 33 տոկոսով, իսկ 1951 թվականի հատկացումները,



1948 թվականի համեմատությամբ, ավելացված են ավելի քան երկու անգամ։

Ջրային տնտեսության մինիստրությունն այս տարիների ընթացքում ստացավ բավականին քանակությամբ էքսկավատորներ ու տրակտորներ ոռոգիչ ու ցամաքեցնող ջրանցքների կառուցման ժամանակ աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար։ 1950 թվականին բոլոր աշխատանքների 80 տոկոսը կատարվեց մեխանիզմների միջոցով։

Ջրային տնտեսության մինիստրության, համապատասխան շրջանների շրջկոմների ու շրջսովետների առջև խնդիր է կանգնած՝ առավելագույն չափով օգտագործել հարուստ տեխնիկան և վերացնել էքսկավատորների պարապուրդները։

Իրենց պլանները 190 տոկոսով կատարող էքսկավատորիստներ Գրիգոր Տոնիկյանի և Մկրտիչ Օկինյանի աշխատանքի փորձը պետք է լայնորեն տարածվի աշխատանքի մնացած տեղամասերում։

Հարկավոր է պատրաստել էքսկա-

վատորխտների ու տրակտորիստների լրացուցիչ կադրեր, բոլոր մեխանիզմների երկհերթ աշխատանքն ապահովելու համար։

Ոռոգվող հողագործության կուլտուրան է՛լ ավելի բարձրացնելու, գյուղատնտեսության մեջ եղած տեխնիկան առավելագույն չափով օգտագործելու և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում բացառիկ նշանակություն ունի ոռոգման նոր սիստեմին անցնելը։

Ոռոգման նոր սիստեմին անցնելու աշխատանքները պետք է ամենուրեք ավարտվեն 1950—1952 թվականների ընթացքում՝ 150 հազար հեկտար տարածության վրա, որից 1950 թվականին՝ 20 հազար հեկտար, 1951 թվականին՝ 58 հազար հեկտար և 1952 թվականին՝ 72 հազար հեկտար։

Ոռոգման նոր սիստեմին անցնելու աշխատանքների 1950 թվականի պլանը ռեսպուբլիկայում կատարված է 18.645 հեկտար տարածության վրա, որը կազմում է պլանի 93 տոկոսը։

Ոռոգման նոր սիստեմին անցնելը



մեծ և բարդ խնդիր է։ Ընթացիկ 1951 թվականը վճռական տարի է հանդիսանում, որը կորոշի ոռոգիչ մանր ցանցի վերակառուցման հաջողությունը, որն ընդգրկում է ընդհանուր տարածության 40 տոկոսը։

Ռեսպուբլիկայի ջրային տնտեսության և գյուղատնտեսության օրգանների ղեկավարները, ինչպես նաև շրջկոմներն ու շրջսովետների գործկոմները պետք է հիշեն, որ ոռոգման նոր սիստեմին անցնելու համար պահանջվում է պատրաստել այդ գործին տեղյակ բավարար թվով աշխատողներ և լայնորեն պարզաբանել ոռոգման նոր սիստեմի էությունը։

Շրջանային պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց ղեկավարությունը և օգնությունը ջրային տնտեսության օրգաններին, ապահովելով կոլխոզների կողմից բանվորական ուժի ժամանակին ուղարկումը ջրտնտեսային աշխատանքներին մասնակցելու համար։

Պետք է նկատի ունենալ, որ ջրանցքների կառուցումն ավարտելու ժամկետների խախտումը և դրանք

ժամանակին շահագործման չհանձ-
նելը կարող է վիժեցման սպառնալի-
քի տակ դնել ցորենի արտադրության
և ռեսպուբլիկան սեփական հացով ա-
պահովելու գործը։

Հայաստանի կոմպարտիայի 14-րդ
համագումարը հատուկ նշանակու-
թյուն տվեց գյուղատնտեսական աշ-
խատանքների մեքենայացման հար-
ցերին, ՄՏ կայանների տրակտորային
պարկի հետագա ուժեղացման և հիմ-
նական աշխատանքների պլանները
մեքենատրակտորային կայանների
կողմից ագրոտեխնիկական սահման-
ված ժամկետներին անպայմանորեն
կատարելու միջոցառումների իրակա-
նացմանը։

Հաշվետու ժամանակաշրջանում գյու-
ղատնտեսական աշխատանքների մե-
քենայացումը մեծ թափ ստացավ։ Մե-
քենատրակտորային կայանները ստա-
ցան հզոր տեխնիկա, որի հետևանքով
տրակտորային պարկը, 15-ուժանի
տրակտորների վերածած, աճեց 85
տոկոսով։ 1951 թվականին տրակտոր-
ների ներմուծումը զգալիորեն կգերա-



զանցի նախորդ տարիների ներմու-
ծումից։

1949 և 1950 թվականների ընթաց-
քում կազմակերպվեցին 6 ՄՏ կայան
ու երեք մեքենաանասնապահական
կայան և ՄՏ կայանների ու մեքենա-
անասնապահական կայանների ընդ-
հանուր թիվն այժմ հասել է 49-ի։ 1951
թվականին նախատեսված է կազմա-
կերպել ևս չորս նոր ՄՏ կայան։

Տրակտորներով և կատարելագործ-
ված գյուղատնտեսական այլ մեքենա-
ներով մեքենատրակտորային կայան-
ների այդպիսի մեծ հագեցվածության
շնորհիվ, կատարված տրակտորային
աշխատանքների ծավալը 1948 թվա-
կանի համեմատությամբ աճեց 51 տո-
կոսով։

Այս տարի տրակտորային աշխա-
տանքների պլանը ռեսպուբլիկայի
ՄՏԿ-ների համար հաստատված է
900 հազար հեկտարի չափով փափուկ
հերկի վերածած, բացի 240 հազար
հեկտար այլ աշխատանքներից, որոնք
կատարվելու են ոռոգման նոր սիստե-
մին անցնելու կապակցությամբ։

Յուրաքանչյուր 15-ուժանի տրակ-

տորի միջին արտադրողականությունը 1950 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, աճեց 20 տոկոսով։

Հայաստանի մեքենատրակտորային կայանները 1950 թվականին ժամկե-տից շուտ կատարեցին տարեկան պլա-նը։ Միայն երեք ՄՏ կայան (Կարա-բաղլարի, Սիսիանի և Ալագյազի ՄՏ կայանները) թերակատարեցին պլա-նը։ Մեքենատրակտորային կայանների աշխատանքների բոլոր հիմնական տե-սակները 1950 թվականին կատարվե-ցին ու գերակատարվեցին։ Մեքենա-տրակտորային կայանները հաշվետու ժամանակաշրջանում սկսեցին սպա-սարկել կոլխոզների անասնաբուծա-կան ֆերմաներին՝ անասնաբուծության աշխատատար պրոցեսները մեքենա-յացնելու գործում։ Զգալի աշխատանք է կատարված խոտհարքի, սիլոսաց-ման, ոչխարների խուզման ասպարե-զում, ինչպես նաև կեր պատրաստող մեքենաների, ջրման ավտոմատ սար-քերի ու էլեկտրական կթի ագրեգատ-ների սարքավորման ուղղությամբ։

Մեքենատրակտորային կայանները մեծ աշխատանք են կատարում կոլ-



խոզները ոռոգման նոր սիստեմին անցնելու ասպարեզում, ինչպես գո-յություն ունեցող ոռոգիչ ջրանցքնե-րի վերացման, այնպես էլ միջնակներն ու ժամանակավոր ոռոգիչ ցանցի հո-ղակտորները վերացնելու ուղղու-թյամբ։

Մեքենատրակտորային կայանների աշխատանքի թերությունն այն է, որ չնայած նրանց մեծ հագեցվածությանը մեխանիզմներով, չի ապահովվում աշ-խատանքների կատարումը սահման-ված ագրոտեխնիկական ժամկետնե-րին, հատկապես Նախկին Միկոյանի, Կիրովականի, Կրասնոսելսկի և Կա-րաբաղլարի ՄՏ կայաններում։

Դեռևս ցածր է առանձին ՄՏ կայան-ների կողմից կատարվող աշխատանք-ների որակը։ Այդպիսի փաստեր տեղի են ունեցել Ամասիայի, Ալագյազի, Գորիսի, Սիսիանի ՄՏ կայաններում։

Ինչպես ՄՏ կայանների, այնպես էլ գյուղատնտեսության մինիստրության և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովե-տին կից Բամբակագործության գլխա-վոր վարչության աշխատանքի խոշոր թերությունն այն է, որ անբավարար

ուշադրություն է նվիրվում մեխանի-զատորական կադրերի պատրաստման, մասնավորապես տրակտորիստների պատրաստման հարցերին, որի հետևանքով մի շարք ՄՏ կայաններում չի կատարվել երկհերթ աշխատանք կիրառելու ցուցումը (օրինակ՝ Ալագյազի, Աղինի, Վեդու, Արարատի, Կարաբաղլարի, Ամասիայի ՄՏ կայանները)։

Գյուղատնտեսության մինիստրության և պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ վերացնել այդ թերությունները, 1951 թվականին ՄՏ կայանների ուշադրության կենտրոնում դնել պետության կողմից տրամադրվող հարուստ տեխնիկան առավելագույն չափով օգտագործելու խնդիրը, թույլ չտալով մեխանիզմների պարապուրդ և ամենուրեք կազմակերպել տրակտորների, կոմբայնների, կալսիչների ու այլ ագրեգատների երկհերթ աշխատանքը։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն վերահսկողությունն ու ղեկավարությունն այն բոլոր նախապատրաստական աշխա-



տանքների նկատմամբ, որոնք ապահովում են բոլոր մեխանիզմների առավելագույն օգտագործումը։

Վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարված գյուղերի էլեկտրիֆիկացման ասպարեզում։ Սակայն բոլոր կոլխոզներն էլեկտրիֆիկացնելու պլանը դեռ կատարված չէ։ Առ 1-ն փետրվարի 1951 թվականի՝ 666 կոլխոզներից էլեկտրիֆիկացված էր 456 կոլխոզ։

Լրիվին էլեկտրիֆիկացված են Մեղրու, Իջևանի, Աղինի, Կիրովականի, Հոկտեմբերյանի, Սևանի, Սպիտակի, Ստեփանավանի և Էջմիածնի շրջանները։ Պլանի կատարմանը մոտ են Արտաշատի, Արթիկի, Ախտայի, Ախուրյանի, Աշտարակի, Բերիայի անվան, Կալինինոյի, Կոտայքի, Մարտունու, Նոր Բայազետի և Շամշադինի շրջանները, որտեղ մնացել է էլեկտրիֆիկացնել 1—2-ական կոլխոզ։

Էլեկտրական էներգիան ավելի ու ավելի մեծ չափով է կիրառվում կոլխոզային արտադրության մեջ։ Մի ամբողջ շարք կոլխոզներում էլեկտրիֆիկացված են կալսման, հացահատիկի

ցման, մելիորացման աշխատանքնե-րը։

Մեր կոլխոզնիկները լայնորեն մասնակցում են հիդրոէլեկտրակայանների կառուցմանը։ 1950 թվականին շահագործման հանձնվեցին Արենիգյուղի, Բասարգեչարի հիդրոէլեկտրակայանը, Այգեձորի, Ակների, Ջերմուկի, Ազատեկի, Ագարակի և այլ հիդրոէլեկտրակայաններ։ Մոտ օրերս շահագործման կհանձնվեն Արտաշատի և Հոկտեմբերյանի հիդրոէլեկտրակայանները։

Էլեկտրիֆիկացման բնագավառում հետագա խնդիրն այն է, որ շարունակենք գյուղական էլեկտրակայանների կառուցումն այն հաշվով, որ մոտակա տարիների ընթացքում ապահովվի կոլխոզների, սովխոզների, ՄՏ կայանների, մեքենաանասնաբուծական կայանների և գյուղատնտեսական այլ սպառողների պահանջի լրիվ բավարարումը գյուղական հիդրոէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայով։

Գյուղատնտեսության մինիստրության և շրջանային պարտիական ու սովետական օրգանների խնդիրն է՝



չսահմանափակվել էլեկտրաէներգիան գյուղ հասցնելով, այլև ապահովել հիմնական գյուղատնտեսական պրոցեսների էլեկտրիֆիկացումը, ներմուծելով անհրաժեշտ քանակությամբ էլեկտրամոտորներ և այլ տեսակի սարքավորում։

Հաշվետու ժամանակաշրջանում տեղի էր ունենում կոլխոզների հետագա կազմակերպական-տնտեսական ամրապնդում։ Այս գործում մեծ նշանակություն է ստանում կոլխոզների խոշորացումը։

Այս միջոցառումը կիրառելու համար կային բոլոր անհրաժեշտ պայմանները, որոնք արտահայտվում են մեծ քանակությամբ բարդ մեխանիզմների ներմուծման միջոցով գյուղատնտեսական աշխատանքների մեխանիզացիան ուժեղացնելու մեջ, մեխանիզմներ, որոնց էֆեկտիվ օգտագործումը հնարավոր է միայն հողային մեծ մասսիվներում։

Կոլխոզների հանրային եկամուտների մակարդակը հնարավորություն է տալիս մեծ չափով ընդլայնել հանրային արտադրությունը, ստեղծել

բարձր ապրանքատու համրային ա-
նասնաբուծություն, իրականացնել
կոլխոզային գյուղերի բարեկարգման
աշխատանքները։

Այս ամենը մանր կոլխոզներին թե-
լադրեց, որ անհրաժեշտ է միավորվել
մոտակա կոլխոզների հետ և համա-
տեղ ուժերով զարգացնել ու է՛լ ավելի
ամրապնդել կոլխոզները։

518 կոլխոզներ իրենց ընդհանուր
ժողովներում որոշումներ ընդունեցին
միավորվելու մասին։ Խոշորացման
հետևանքով կոլխոզների թիվը՝ 1948
թվականին եղած 1043-ից 1950 թվա-
կանի վերջին դարձավ 666։

Կոլխոզների խոշորացումից ձեռն-
պահ մնացին լեռնային շրջաններ՝
Ղափանի, Ազիզբեկովի, Մեղրու և մի
քանի այլ շրջաններ, որտեղ գյուղերը
դեռևս չեն սպասարկվում մեքենա-
տրակտորային կայանների կողմից և
լեռնային ռելյեֆի պայմանները հնա-
րավորություն չեն տալիս ստեղծելու
հողային խոշոր մասսիվներ։

Կոլխոզների խոշորացման հետե-
վանքով յուրաքանչյուր կոլխոզի վա-
րելահողի միջին չափը ռեսպուբլիկա-



յում հասավ 820 հեկտարի՝ մինչև
խոշորացումը եղած 545 հեկտարի
փոխարեն։

Տնտեսությունների միջին քանակը
յուրաքանչյուր կոլխոզում հասավ
230-ի, մինչև խոշորացումը եղած
160-ի փոխարեն։

Աշխատունակ կոլխոզնիկների թի-
վը յուրաքանչյուր կոլխոզում միջին
հաշվով ավելացավ 147 մարդով։

Կրճատվեց կոլխոզների վարչա-
կառավարչական ապարատը և ավելի
քան 240 հազար աշխօրով պակասե-
ցին նրա պահպանման ծախսերը։

Խոշորացման հետևանքով մեծա-
պես բարելավվեց ղեկավար կոլխո-
զային կադրերի կազմը։ Ղեկավար-
ման ասպարեզ եկան ավելի պատ-
րաստված կադրեր, որոնք կարող են
ապահովել սովետական գիտության
նվաճումների և առաջավորների փոր-
ձի արմատավորումը գյուղատնտեսու-
թյան մեջ։

Կոլխոզների նախագահներից 126
մարդ ունեն բարձրագույն և միջնա-
կարգ գյուղատնտեսական կրթություն։
Շատ մասնագետներ առաջ են քաշ-

վել իբրև խոշորացված կոլխոզների նախագահների տեղակալներ։

Ընթացիկ տարվա փետրվարին կոլխոզներում անցկացվեցին հաշվետու-ընտրական ժողովներ։ Կոլխոզների նախագահներ և նախագահների տեղակալներ ընտրվեցին բարձրագույն և միջնակարգ գյուղատնտեսական կրթություն ունեցող ևս 54 մասնագետներ։

Հաշվետու ժամանակաշրջանում մեծ չափով աճել են կոլխոզների դրամական եկամուտները, որոնք 1950 թվականին 1948 թվականի համեմատությամբ ավելացան մոտ 26 տոկոսով։

Աճել են նաև կոլխոզների անբաժանելի ֆոնդերը։ 1950 թվականին անբաժանելի ֆոնդերի գումարը հասավ 809 միլիոն ռուբլու՝ 1948 թվականի 750 միլիոն ռուբլու փոխարեն։

Բարելավվում է նաև աշխատանքի կազմակերպումը կոլխոզներում։ Յուրաքանչյուր աշխատունակ կոլխոզնիկի վաստակած աշխօրերի քանակը 1950 թվականին հասավ 192-ի՝ 1948 թվականին եղած 166 աշխօրի փոխարեն։



Կոլխոզների հանրային տնտեսության զարգացման և ամրապնդման ընդհանուր հաջողություններին զուգընթաց՝ կոլխոզների պարտիական կազմակերպությունների, շրջկոմների և շրջսովետների գործկոմների աշխատանքում շարունակում են գոյություն ունենալ խոշոր թերություններ։

Մի շարք շրջաններում դեռ տեղի ունեն գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներ։

Կրասնոսելսկի, Կոտայքի, Ապարանի, նախկին Ամասիայի, Բասարգեչարի և այլ շրջանների կոլխոզներում այդ խախտումներն արտահայտվեցին հանրային հողերի վատնման, մթերքները առանց կոլխոզի վարչության ու կոլխոզնիկների ընդհանուր ժողովի գիտության բացահայտ ցածր գներով վաճառելու և ծախսելու, աշխօրերն ապօրինաբար ծախսելու և վարչական ծախսերի մեջ ավելորդություններ թույլատրելու ուղղությամբ։

Թալինի, Ստեփանավանի, Կիրովականի և նախկին Ամասիայի շրջանների կոլխոզներում 1950 թվականին բացահայտվեցին կոլխոզնիկների

աշխօրերի վարձատրության վերաբերյալ Կառավարության որոշումը խախտելու փաստեր։

Մի շարք շրջաններում շարունակում է գոյություն ունենալ աշխօրերի սահմանված մինիմումի թերակատարումը կոլխոզնիկների կողմից։ Հատկապես վատ է դրությունը Արտաշատի, Մարտունու, Կալինինոյի, Արթիկի, Աշտարակի և Կոտայքի շրջանների կոլխոզներում։

Համագումարում չի կարելի չհիշատակել նաև այն մասին, որ շատ շրջաններում շարունակում են մարդկանց նյութապես-պատասխանատու պաշտոնների նշանակել՝ առանց նրանց բավականաչափ ուսումնասիրելու, որի հետևանքով շատ կոլխոզներում տեղի ունեն միջոցների յուրացում, ապօրինի գործարքներ, կոմբինացիաներ և կոլխոզները կողոպտելու այլ երևույթներ։ Այսպիսի փաստեր հաճախ են հանդիպում Ղափանի, նախկին Ամասիայի, Կրասնոսելսկի, Նոյեմբերյանի, Թալինի, Կալինինոյի, նախկին Դիլիջանի, Ախտայի շրջանների կոլխոզներում։



Պարտիական կազմակերպությունները պետք է վերացնեն այս բացասական երևույթները, ոչ մի դեպքում չպետք է թուլացնեն պայքարը գյուղատնտեսական արտելի Կանոնադրության ճշգրիտ իրականացման համար, պետք է ավելի ուշադիր ուսումնասիրեն նյութապես-պատասխանատու պաշտոններ գրավող կադրերին, այդ պաշտոններում թույլ չտալով այնպիսի անձանց, որոնք անցյալում դատվել են կամ թե չեն վայելում կոլխոզային հասարակայնության վստահությունը։

Պարտիայի շրջանային կոմիտեներն ավելի մեծ ուշադրություն պետք է նվիրեն ղեկավար կոլխոզային կադրերի սիստեմատիկ պատրաստմանը, կոլխոզներում ղեկավար աշխատանքի ներգրավեն փորձված մարդկանց, որոնք բավարար գիտելիքներ ունեն գյուղատնտեսության և կոլխոզային արտադրության բնագավառում։

Պարտիական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն կոլխոզնիկների ուսուցմանը ագրո-զոոտեխնիկական եռամյա դա-

սընթացներում, այդ դասընթացների կոմպլեկտավորման, պարապմունքների դրվածքի և դասավանդման որակի հարցերին։

Հարկավոր է շրջկոմներում ավելի հաճախակի լսել դասընթացների ղեկավարների՝ ուսուցման ընթացքի մասին և նրանց ամեն կերպ օգնություն ցույց տալ այդ գործում եղած թերությունները վերացնելու համար։

Կոլխոզային պարտիական կազմակերպությունները և պարտիայի շրջկոմները պետք է ավելի կոնկրետ կերպով զբաղվեն առաջավոր կոլխոզնիկների փորձի ուսումնասիրությամբ՝ ըստ կոլխոզային արտադրության առանձին տեսակների, և այն լայնորեն տարածեն շրջանի մյուս կոլխոզներում։

Կոլխոզային արտադրության ղեկավար կադրերին պետք է ավելի մեծ պահանջներ ներկայացնել պրոգրեսիվ և ագրո-զոոտեխնիկական այլ նվաճումների իրականացման գործում։ Նրանց աշխատանքը գնահատելիս հարկավոր է առաջին հերթին, մոտենալ այն տեսակետից, թե նրանք ինչպես



են կիրառում տեխնիկայի, գիտության նվաճումները և կոլխոզների առաջավոր փորձը։

Մանր կոլխոզների խոշորացման կապակցությամբ որոշ ընկերների կողմից արտահայտվում են մի շարք կարծիքներ, որոնք շփոթություն են մտցնում ներկայումս խոշորացված կոլխոզների առջև կանգնած գլխավոր խնդրի մեջ և պարտիական ակտիվին ապակողմնորոշում են, չնայած այդ հարցի պարզ ու հստակ դրվածքին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվներում։

Այդ ընկերների կարծիքով խոշորացված կոլխոզների ամենակարևոր հարցերից մեկը մանր գյուղերի վերաբնակեցումն է, այսինքն՝ մանր գյուղերի բնակչության միավորումը և նրանց բնակեցումը մեկ գյուղում, այնտեղ, որտեղ խոշորացված կոլխոզի վարչությունն է գտնվում։

Այլ ընկերներ կոլխոզնիկների այդպիսի վերաբնակեցման համար առաջարկում են կառուցել ագրոքաղաքներ կամ կոլխոզային ավաններ՝ երեք— չորս բնակարանից բաղկացած երկհարկանի տներով, մեկ տան մեջ կոլ-

խոզային մի քանի ընտանիք տեղա-
վորելու համար։

Այսպիսի հարցադրումը շփոթություն
է ստեղծում և հետին պլանն է մղում
մանր կոլխոզների խոշորացման գըլ-
խավոր խնդիրը՝ գյուղատնտեսության
հետագա արագ վերելքի և հանրային
կոլխոզային արտադրության զարգաց-
ման խնդիրը։

Բանն այն է, որ վերջին տարիների
ընթացքում, պետության կողմից գյու-
ղատնտեսությանը տրակտորներով,
կոմբայններով և նյութական-տեխնի-
կական այլ միջոցներով ցույց տրվող
աճած օգնության կապակցությամբ,
անհրաժեշտ պայմաններ են ստեղծվել
գյուղատնտեսության է՛լ ավելի արագ
վերելքի համար։

Մինչդեռ այդ գործում լուրջ արգելք
էր հանդիսանում զգալի թվով մանր
կոլխոզների առկայությունը, որոնք ի-
րենց ամրացրած հողերի չափերով
չէին կարողանում բավականաչափ
հաջող, բարձր արտադրողականու-
թյամբ օգտագործել տրակտորները,
կոմբայններն ու բարդ կալսիչները,
չէին կարողանում ստեղծել բարձր ապ-



րանքայնություն ունեցող հանրային
խոշոր անասնաբուծություն, չէին կա-
րողանում բազմակողմանիորեն զար-
գացնել հանրային կոլխոզային ար-
տադրությունը և ապահովել հանրային
եկամուտների արագ աճն ու կոլխոզ-
նիկների նյութական-կուլտուրական
մակարդակի բարձրացումը։

Մանր կոլխոզների խոշորացումը
վերացրեց այդ արգելքները և պայ-
մաններ ստեղծեց կոլխոզների հետա-
գա ամրապնդման ու ամբողջ գյու-
ղատնտեսության արագ վերելքի հա-
մար։

Այսպիսով, խոշորացված կոլխոզների
առջև կանգնած գլխավոր խնդիրն է
է՛լ ավելի բարձրացնել գյուղատնտե-
սությունը՝ հանրային տնտեսության
խոշորացման և զարգացման, գյուղա-
տնտեսական մեխանիզմների և միա-
վորված կոլխոզների այլ ռեսուրսների
առավելագույն օգտագործման, կոլխո-
զային արտադրության բոլոր ճյուղերի
զարգացման և կոլխոզնիկների աշ-
խատանքի ռացիոնալ կազմակերպ-
ման միջոցով։

Այս գլխավոր խնդիրը ուրիշ հարցե-

րով, այդ թվում և մանր գյուղերի վերաբնակեցման հարցով ննդափոխելու ամեն մի փորձ շփոթություն է ստեղծում և խախտում է պարտիայի քաղաքականությունը կոլխոզային շինարարության ներկա էտապում։

Եթե ըստ էության քննության առնենք այդ առաջարկները, ապա հանդում ենք բացասական հետևությունների։

Ամենից առաջ ագրոքաղաքների, այդ հիբրիդների մասին։ Առաջարկում են ագրոքաղաքներ կառուցել, բայց չեն բացատրում, թե ինչ տարբերություն պետք է լինի գյուղի ու ագրոքաղաքի կամ ագրոքաղաքի ու քաղաքի միջև։

Ինձ թվում է, որ այդ առաջարկների մեջ կա ավելի շատ ֆանտաստիկա, քան թե կոլխոզային գյուղի ռեալ պահանջների բավարարում։

Նույնը կարելի է ասել նաև այն մասին, թե իբր բնակավայրերի՝ գյուղ անունը այլևս չի բավարարում կոլխոզնիկներին և հարկավոր է նոր անուն հորինել։

Մանր կոլխոզների բնակչությանը



մեկ խոշորացված գյուղում վերաբնակեցնելու կողմնակիցների սխալը, ինչպես էլ նրանք անվանեն այդ խոշոր գյուղը՝ ագրոքաղաք թե կոլխոզային ավան,— այն է, որ նրանք մանր կոլխոզները, իբրև արտադրական միավորներ, մեկ խոշոր կոլխոզային տընտեսության մեջ միավորելու պատմական անհրաժեշտությունը մեխանիկորեն նույնացնում են մանր գյուղերը մեկ խոշոր գյուղի մեջ միավորելու հարցի հետ։

Մինչդեռ սոցիալիստական խոշոր տնտեսությունների՝ սովխոզների փորձը ցույց է տալիս, որ խոշոր տնտեսության մեջ անհրաժեշտություն չի զգացվում բանվորական ուժը տեղավորել մեկ վայրում։

Բանվորական ուժը ապրում է մշակվող հողերի մոտակայքում ընկած տընտեսություններում՝ այն ժամանակ, երբ սովխոզների վարչությունները գտնըվում են կենտրոնական բնակատեղում։

Խոշորացված կոլխոզների արտադրական շահերը նաև կպահանջեն մանր գյուղերն օգտագործել այն ար-

տադրական բրիգադաների տեղավոր֊ման համար, որոնք մշակում են կոլ֊տնտեսային հողերի՝ տվյալ գյուղին մո֊տիկ գտնվող կտորները։

Այսպիսով, բուն հարցադրումն էլ չի բխում խոշորացված կոլխոզների ար֊տադրական շահերից։

Բոլորին հայտնի է, որ բանվորական ուժի կամ կոլխոզնիկների բնակեց֊ման կարգը խստորեն ենթարկվում է տնտեսության արտադրական սկզբուն֊քին։

Ուստի առանձին ընկերների առա֊ջարկները մանր գյուղերի վերաբնա֊կեցման մասին և՛ իր էությամբ սը֊նանկ է, և՛ չի բխում պարտիայի ու սովետական իշխանության քաղաքա֊կանությունից կոլխոզների կազմա֊կերպական-տնտեսական ամրապնդ֊ման գործում։

Ես կանգ չեմ առնում անընդունելի այլ հարցերի վրա, ինչպես, օրինակ, գյուղում երեք-չորս բնակարանից բաղկացած երկհարկանի շենքերի կա֊ռուցումը կամ տնամերձ հողամասերի կրճատումը, գտնելով, որ այդ հարցե֊րը բոլորի համար պարզ են, ըստ էու֊



թյան հակասում են գյուղատնտեսա֊կան արտելի կանոնադրությանը և չեն համապատասխանում հանրային կոլ֊խոզային տնտեսության զարգացման շահերին։

Մերժելով այդ առաջարկները, մենք պետք է մեր ուշադրությունը կենտրո֊նացնենք այն դիրեկտիվների իրակա֊նացման վրա, որ ՀամԿ(բ)Պ Կենտկո֊մը տվել է խոշորացված կոլխոզների տնտեսական զարգացման, կոլխոզ֊նիկների հանրային եկամուտների բարձրացման, կոլխոզային գյուղերի բարեկարգման և նրանց կուլտուր֊կենցաղային մակարդակի բարձրաց֊ման ասպարեզում։

14-րդ համագումարում նշվեց մեր սովխոզների վատ աշխատանքը։ Վեր֊ջին տարիների ընթացքում սովխոզնե֊րը հասան բերքատվության զգալի բարձրացման և անվնաս աշխատան֊քի։

Բերքատվության լավագույն ցու֊ցանիշներ ունեն շամպայն գինիների կոմբինատի Նոյեմբերյանի սովխոզը (դիրեկտոր՝ ընկ. Ն. Պետրոսյան), «Ա֊րարատ» տրեստի Միկոյանի անվան

սովխոզը (դիրեկտոր՝ ընկ. Սարգսյան), Կոնսերվտրեստի Շահումյանի անվան սովխոզը (դիրեկտոր՝ ընկ. Ե. Աբազյան) և ՍՍՌ Միության Սովխոզների մինիստրության Լոռու ցեղական անասունների սովխոզը (դիրեկտոր՝ ընկ. Հ. Մկրտչյան)։

Անդարդյունաբերության մինիստրության և Միութենական ենթարկման սովխոզների դիրեկցիաների խնդիրն է՝ է՛լ ավելի բարձրացնել բերքատվությունը, վերացնել հետամնացությունն արտադրական պլանների կատարման գործում, վերականգնել սառնամանիքներից փչացած տնկիները, վերացնել խաղողի և պտղատու այգիների նոսրությունը, բարելավել տնկիների խնամքը և մեքենայացնել արտադրական աշխատանքները։

Հայաստանի գյուղատնտեսության վիճակի մասին վերը ասվածից կարելի է այն հետևությունն անել, որ կոլխոզները, սովխոզներն ու մեքենատրակտորային կայանները 1951 թվականի գարունը դիմավորում են տեխնիկայով ավելի զինված, սերմացուով ապահովված, կազմակերպորեն



ամրապնդված, գործն իմացող բավական քանակությամբ կադրերով։

Գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերաբերյալ մենք ունենք ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և Միութենական կառավարության դիրեկտիվները նրանց հեռանկարների և զարգացման ուղիների մասին։

Պարտիական և սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգաններն ու կոլխոզները, ունենալով այդպիսի պարզ հեռանկարներ, հստակ ցուցումներ և նյութական-տեխնիկական մեծ օգնություն, պետք է այնպես կազմակերպեն առաջիկա գյուղատնտեսական աշխատանքները, որ առավելագույն չափով օգտագործեն եղած հնարավորություններն ու ռեզերվները, սեղմ ժամկետներում կատարեն բոլոր գյուղատնտեսական աշխատանքները և 1951 թվականը դարձնեն բարձր բերքատվության, անասնաբուծության բարձր մթերատվության տարի, կոլխոզների հանրային տնտեսության ընդլայնման և բնակչության բարեկեցության հետագա աճման տարի։

## ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ, ԳԻՏՈՒԹՅԱՆ, ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՎԵՍՏԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հաշվետու ժամանակաշրջանը նշանավորվում է կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի հետագա աճով։

Կուլտուրայի բնագավառում պարտիական կազմակերպություններն իրենց ամբողջ ուշադրությունն ու ջանքերը ուղղեցին իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումների իրականացմանը և հիանալի հաջողությունների հասան իդեոլոգիական ֆրոնտում։

Այդ հաջողությունները ձեռք են բերվել բուրժուական ռեակցիոն իդեոլոգիայի ամեն տեսակ ազդեցությունների, գիտության, գրականության և արվեստի առանձին աշխատողների մոտ իդեալիզմի, ֆորմալիզմի, գաղափարազրկության արտահայտությունների, բուրժուական նացիոնալիզմի ռեցիդիվների դեմ ամենադաժան պայքարում։



Իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվների իրականացման գործում եղած հաջողությունները զարգացման նոր, ավելի բարձր աստիճանի հասցրին բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրան։ Այս նոր աստիճանը բնութագրվում է նրանով, որ աճել է գաղափարականությունը, ժողովրդայնությունը և սոցիալիստական հասարակակարգ կառուցողների կյանքի արտացոլումը։ Իդեոլոգիական հարցերի նկատմամբ պարտիական կազմակերպությունների ղեկավարության ուժեղացումը և այդ բնագավառում եղած հաջողությունները ստեղծագործական լայն ճանապարհ դուրս բերին մեր գիտնականներին, գրողներին, արվեստի աշխատողներին, մեր ամբողջ ինտելիգենցիային, որն ավելի ու ավելի ակտիվ կերպով է մասնակցում սովետական գիտության և կուլտուրայի զարգացման ասպարեզում ընկեր Ստալինի կողմից առաջադրված խնդիրների լուծմանը։

Այս ընդհանուր հետևությունը հաստատելու համար թույլ տվեք կանգ

առնել գիտության, կուլտուրայի, գրականության և արվեստի աշխատանքի առանձին բնագավառների վրա։

Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարը պարտիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց իրականացնել ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցումը գյուղում և լրիվ միջնակարգ ուսուցումը՝ քաղաքում։

Այս խնդիրը հաջողությամբ է կատարվում։ 1950—1951 ուսումնական տարվա սկզբին գյուղերը լրիվին ապահովված էին յոթնամյա դպրոցների, իսկ քաղաքները՝ լրիվ միջնակարգ դպրոցների ցանցով։

Այսպիսով, արդեն ուսումնական բազա է ստեղծված ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցման համար՝ գյուղում և տասնամյա ուսուցման համար՝ քաղաքում։

Քաղաքային բոլոր միջնակարգ դպրոցներում վերացված են երեք հերթի պարապմունքները և միայն մի քանի դպրոցներում է, որ առանձին դասարաններ երրորդ հերթի են պարապում։



Ընթացիկ տարում նախատեսված դպրոցների շինարարությունն ավարտվելով, ամբողջ Հայաստանում կվերացվեն երեք հերթի պարապմունքները դպրոցներում։

Մեր առջև կանգնած մյուս խնդիրն այն է, որ երեք—չորս տարվա ընթացքում վերացնենք դպրոցներում նաև երկրորդ հերթերը։ Երևան քաղաքում երեք լրիվ միջնակարգ դպրոցներ արդեն աշխատում են մեկ հերթի։

Նկատելիորեն բարելավվել է ուսուցիչների որակավորումը։ Ավելացել է բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչների թիվը, լայնորեն ծավալվել է ուսուցիչների հեռակա ուսուցումը՝ բարձրագույն կրթություն ստանալու համար։

1949—1950 ուսումնական տարում Հայպետհրատը հրատարակեց 74 անուն դասագիրք՝ 2 միլիոն 400 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։ Մասսայական դպրոցների բոլոր դասագրքերը հրատարակվեցին նախքան ուսումնական տարին սկսվելը։

Միջնակարգ դպրոցների աշխատանքում եղած թերությունը առաջ-

վա նման ուսուցման ցածր որակն է։ Այս գործը չափազանց դանդաղ տեմպերով է բարելավվում։ Անցյալ ուսումնական տարում դպրոցներում կար 39 հազար երկրորդ տարեցի աշակերտ։

Շարունակում է ետ մնալ ռուսաց ու հայոց լեզուների և մաթեմատիկայի դասավանդման մակարդակը։ Լուսավորության մինիստրությունը չի կարողացել ապահովել այդ առարկաների որակյալ դասավանդումը։

Դպրոցներում ուսումնական աշխատանքի բարելավման դանդաղ տեմպերին նպաստում է ուսուցչական կադրերի մեծ հոսունությունը և շրջանային ու քաղաքային Սովետների գործկոմների ժողովրդական կրթության բաժինների տեսչական թույլ աշխատանքը։ Դպրոցների տեսչական ստուգումը անց է կացվում ցածր մակարդակով։ Ուսուցիչների աշխատանքի դրական փորձը անբավարար է ուսումնասիրվում, ընդհանրացվում և տարածվում ռեսպուբլիկայի դպրոցներում։

Ուսուցման, մասնավորապես լեզու-



ների ուսուցման ցածր որակի մյուս պատճառը այն խոշոր սխալներն են, որ թույլ են տրված այդ առարկաների դասագրքերում ու ծրագրերում, որոնց մեջ թերագնահատվում է քերականության նշանակությունը։

Ուսուցիչների մեծ մասը իր ուշադրությունն ավելի շատ կենտրոնացնում է աշակերտների գրավոր աշխատանքների բովանդակության վրա, քերականության և ուղղագրության հարցերը համարելով երկրորդական։ Դպրոցներում բավարար ուշադրություն չի նվիրվում ուղղագրության կանոնների ուսումնասիրմանը և այդ կանոնների հաստատ յուրացմանը աշակերտների կողմից։

Լեզուների դասավանդման նկատմամբ այսպիսի մոտեցումը անգրագիտություն է արմատավորում։

Անհրաժեշտ է, որ Լուսավորության մինիստրությունը վերացնի այդ թերությունները և լեզուների դասավանդումը վերակառուցի լեզվաբանության վերաբերյալ, ընկեր Ստալինի ուսմունքի հիման վրա։

Պարտիական ու կոմերիտական

կազմակերպությունների և ժողովրդական կրթության օրգանների առջև խնդիր է կանգնած է՛լ ավելի բարձրացնել ուսումնա-դաստիարակչական աշխատանքը դպրոցներում, բարձրացնել դասավանդման գաղափարական մակարդակը՝ աշակերտների մեջ կայուն և խոր գիտելիքներ ապահովելու, գիտակցական կարգապահություն ամրապնդելու համար։

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն ամրապնդվել են ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները։ Ներկայումս ստացիոնար բուհերում սովորում է 10.500 ուսանող, իսկ հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 5.500 ուսանող։

Հաշվետու ժամանակաշրջանում բարձրագույն ուսումնական հաստատություններն ավարտել են 3.355 մասնագետներ՝ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերի գծով։

Զգալիորեն բարձրացել է բուհերում դասախոսությունների, սեմինարների և պրակտիկ պարապմունքների գա-



ղափարական-տեսական մակարդակը։ Այդ բարելավումը վերաբերում է նաև հասարակական գիտությունների, հատկապես մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դասավանդմանը։

Նկատելի կերպով բարելավվել է նաև ֆիզիկո-մաթեմատիկական կադրերի պատրաստությունը։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների մեջ սկսել է հատկապես աչքի ընկնել Երևանի Մոլոտովի անվան Պետական համալսարանը, որը վերջին տարիների ընթացքում մեծ չափով բարձրացրել է ուսումնական աշխատանքի որակը, ամբիոնները կոմպլեկտավորում է ավելի որակյալ պրոֆեսորա-դասախոսական կադրերով և ավելի պատրաստված շրջանավարտներ է տալիս։

Ուսումնա-մանկավարժական աշխատանքը դեռ շարունակում է ցածր մակարդակի վրա մնալ Լենինականի մանկավարժական ինստիտուտում ու Երևանի Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտում, որը հետևանք է դասախոսական կադրերի անբավարար որակա-

վորման և այն բանի, որ դասախոսների մի մասը շարունակում է աշխատել համատեղության կարգով։

Այս մանկավարժական բուհերում և մասամբ Երևանի գյուղատնտեսական ինստիտուտում քիչ ուշադրություն է նվիրվում ուսանողության ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացման հարցերին։

Պարտիական և սովետական կազմակերպությունները պետք է ուշադրություն դարձնեն այն երևույթի վրա, որ բարձրագույն ուսումնական հաստատություններում ընդունելության կոնտինգենտը որոշելիս միշտ չէ, որ հաշվի են առնվում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրական հիմնարկների պահանջները։ Այս բանն ավելի մեծ չափով վերաբերում է Գյուղատնտեսական, Զոո-անասնաբուժական և որոշ չափով Պոլիտեխնիկական ինստիտուտներին։

Խնդիրն այն է, որ բարձրագույն ուսումնական հաստատություններում պատրաստվեն բարձրորակ կադրեր և այնպիսի քանակությամբ, որը



մասնագետներով լիովին ապահովի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության, արդյունաբերության և կուլտուրայի զարգացող ճյուղերի պահանջը։

Անցած երկու տարվա ընթացքում նաև բարելավվել է միջին որակավորման կադրերի պատրաստումը տեխնիկումներում։ Այդ ժամանակամիջոցում տեխնիկումները բաց են թողել միջին որակավորման ավելի քան 3.800 մասնագետ։

Հետագա աշխատանքի ընթացքում անհրաժեշտ է, որ համապատասխան մինիստրություններն ուժեղացնեն ղեկավարությունը տեխնիկումների աշխատանքի նկատմամբ՝ ինչպես ուսուցման դրվածքի, այնպես էլ տեխնիկումներն ավարտածներին բաշխելու և ըստ մասնագիտության աշխատանքի ուղարկելու գործում։

Գիտա-հետազոտական հիմնարկների նկատմամբ պարտիական կազմակերպությունների ղեկավարությունն ընթացել է այն խնդիրների իրականացման գծով, որ առաջադրեց Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարը Գիտությունների ակադեմիայի գի-

տա-հետազոտական հիմնարկների աշխատանքի հետագա բարելավման և այնպիսի գիտական աշխատությունների ստեղծման վերաբերյալ, որոնք նպաստեն սովետական գիտության զարգացմանն ու ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության պրակտիկ պրոբլեմների լուծմանը։

Գիտա-հետազոտական հիմնարկները մշակել և հրապարակել են գիտության համար կարևոր մի շարք աշխատություններ։ Դրանց թվում անհրաժեշտ է հիշատակել Գիտությունների ակադեմիայի Բյուրականի աստղադիտարանի աշխատանքը՝ Աստղային ասոցիացիաների մասին, որի հեղինակներն են Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Վ. Հ. Համբարձումյանն ու գիտությունների թեկնածու ընկ. Բ. Մարգարյանը, ինչպես նաև ակադեմիկ Մ. Գ. Թումանյանի «Վայրի տարեկանի ծագման պրոբլեմը» վերնագրով կարևոր աշխատությունը։

Արդյունաբերության զարգացման համար պրակտիկ մեծ նշանակություն ունեցող կարևոր աշխատանք է



կատարել Գիտությունների ակադեմիայի Քիմիական ինստիտուտը։ Քիմիական գիտությունների թեկնածու Մանվելյանը հաջողությամբ մշակել է նեֆելինային սիենիտներից արդյունաբերության համար հումք և քիմիական այլ նյութեր ստանալու պրոբլեմը։ Նա նաև մշակել է տեխնոլոգիական մի պրոցես, որը հեշտացնում է նեֆելինի անսպառ պաշարների արդյունաբերական մշակումը։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 14-րդ համագումարը խնդիր դրեց ուժեղացնել ղեկավարությունը հասարակական գիտությունների բնագավառում կատարվող գիտա-հետազոտական աշխատանքների նկատմամբ։

Այդ նպատակով վերանայվեցին գիտա-հետազոտական թեմատիկ պլանները և գիտական աշխատողների ուշադրությունն ուղղվեց այն բանին, որ արագացվեն աշխատանքները հայ ժողովրդի պատմության, գրականության և կուլտուրայի վերաբերյալ մարքսիստական աշխատություններ ստեղծելու ասպարեզում։

Գրականության ինստիտուտը պատրաստել և հրատարակել է հայ գրականության պատմության դասագրքի առաջին երկու հատորները, տպագրության համար պատրաստ է երրորդ հատորը։

Պատմության ինստիտուտը տպագրության է հանձնել «Հայ ժողովրդի պատմության» առաջին մասը։ Պատրաստված է երկրորդ մասի մակետը, որը կհրատարակվի մոտիկ ժամանակներս։ Հրատարակվող՝ «Հայ ժողովրդի պատմություն» աշխատությունը մեծ նշանակություն կունենա բարձրագույն ուսումնական հաստատությունների համար իբրև դասագիրք և որպես ձեռնարկ՝ միջնակարգ դպրոցների ուսուցիչների համար։

Գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքում եղած նվաճումների կողքին շարունակում են գոյություն ունենալ նաև խոշոր թերություններ։

Հասարակական գիտությունների բաժանմունքը անբավարար չափով է մշակում նոր, նորագույն և մասնավորապես սովետական ժամանակա-



շրջանի պատմության և գրականության ակտուալ հարցերը։

Գիտությունների ակադեմիայի արվեստի սեկտորը դեռ չի հրատարակել կերպարվեստի, ճարտարապետության և թատրոնի վերաբերյալ ոչ մի աշխատություն։ Սեկտորը չի ընդհանրացնում հայկական սովետական արվեստի նվաճումները։

Անբավարար է ընթացել Լեզվի ինստիտուտի աշխատանքը, որի ղեկավարությունը գտնվում էր լեզվի մասին այսպես կոչված՝ նոր ուսմունքի ներկայացուցիչների ձեռքում։ Ինստիտուտում իշխում էր գիտական աշխատանքի համար անտանելի ռեժիմ, որն ընկեր Ստալինը խիստ կերպով դատապարտեց «Մարքսիզմի վերաբերյալ լեզվաբանության մեջ» իր աշխատությունում։

Մառի հետևորդները հետապնդում և գիտական հիմնարկներից վռնդում էին այն բոլոր գիտնականներին, որոնք չէին դավանում Մառի հակամարքսիստական կոնցեպցիան,— նույնիսկ այնպիսի գիտնականի, ինչպիսին ակադեմիկոս Ղափանցյանն է։

Ընկ. Ղարիբյանի և ուրիշների այդպիսի աշխատանքի հետևանքով լեզվաբանության ֆրոնտում տիրում էր լիակատար շփոթ և գիտական մտքի լճացում։

Այս տեսակետից Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի բյուրոն սխալ թույլ տվեց, խորապես չուսումնասիրեց լեզվաբանության բնագավառում տեղի ունեցող պայքարը, հակահարված չտվեց ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի կոորդինացման խորհրդում պրոֆ. Սերդյուչենկոյի հարձակումներին՝ ուղղված ակադեմիկոս Ղափանցյանի ու Հայաստանի այլ գիտնականների դեմ և, սխալ դիրք գրավելով, համաձայնվեց, որ ակադեմիկոս Ղափանցյանը հեռացվեր Պետական համալսարանի ամբիոնի վարիչի պաշտոնից։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի բյուրոն այդ սխալն ուղղեց ընկեր Ստալինի ցուցումից հետո։

Այստեղ անհրաժեշտ է հայտարարել, որ դանդաղ են վերակառուցում աշխատանքը ինչպես Գիտությունների ակադեմիայի Լեզվի ինստիտուտը, այնպես էլ Պետական համալսարանի



ու Մանկավարժական ինստիտուտների լեզվի ամբիոնները, որոնք գործնական քայլեր ու հետևություններ չեն անում լեզվաբանության վերաբերյալ ընկեր Ստալինի ուսմունքից։

Այս բանի հետևանքով վերանայված չէ գրաբարի հին, սխալ գնահատականը, շարունակվում է հայոց լեզվի բաժանումը արևելահայերենի ու արևմտահայերենի, միջոցներ ձեռք չեն առնըվում հայոց լեզուն նրա համար խորթ ներմուծումներից մաքրելու ուղղությամբ, բացակայում է բավարար պայքարը հայոց լեզվի մաքրության համար Հայաստանի գրողների երկերի մեջ։

Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները ամենամոտիկ ժամանակում կազմակերպեն լեզվի վերաբերյալ ընկեր Ստալինի ուսմունքից բխող միջոցառումների պրակտիկ իրականացումը։

Գիտությունների ակադեմիայի գիտական ինստիտուտների աշխատանքի մեջ գոյություն ունեցող մյուս թերությունը նրանց ուռճացումն է գիտական աշխատանքի հետ առնչություն

չունեցող մարդկանց հաշվին, գիտական հիմնարկների մանրատվածությունը և գիտական կադրերի ցրվածությունը։

Գիտությունների ակադեմիայի սիստեմում կան անապաստան վիճակում գտնվող որոշ հիմնարկներ, որոնց ոչ ոք չի ղեկավարում, որոնք ոչ ոքի աշխատանքը քիչ էֆեկտ է տալիս։ Այդպիսի գիտական հիմնարկների թվին է պատկանում ֆիզիկո-քիմիական լաբորատորիան՝ տեխնիկական գիտությունների դոկտոր Օ. Դավթյանի գլխավորությամբ և էլեկտրատեխնիկական լաբորատորիան, որը ղեկավարում է ինժեներ Լերեդեր։ Այս հիմնարկները երկար ժամանակվա ընթացքում չեն հրապարակել ոչ մի գիտական աշխատություն. Նրանցով ոչ ոք չի հետաքրքրվում, թեև դրանք Գիտությունների ակադեմիայի նախագահության անմիջական իրավասության տակ են գտնվում։

Ցանկալի է, որ Գիտությունների ակադեմիայի նախագահությունը քննության առնի դրանց հետագա այդպիսի



գոյության նպատակահարմարությունը և այդ հիմնարկների գիտական ղեկավարումն ուժեղացնելու միջոցառումներ նշի։

Վերջին տարիների ընթացքում Հայաստանի գրողներն զգալիորեն հաղթահարեցին թեմատիկայի սահմանափակությունը, ավելի խոր կերպով տիրապետեցին սոցիալիստական ռեալիզմի մեթոդին և որոշ հաջողություններ ունեն գաղափարական նպատակասլացության հասնելու գործում։

Այս տեսակետից հիշատակության արժանի են պոեզիան, դրամատուրգիան և մանկական գրականությունը։

Պոեզիայի բնագավառում ուշագրավ են Գ. Էմինի «Նոր ճանապարհ» բանաստեղծությունների ժողովածուն, որն աչքի է ընկնում գաղափարական հագեցվածությամբ, թարմությամբ ու գեղարվեստական բարձր ձևով, Ս. Կապուտիկյանի «Սա իմ երկիրն է» բանաստեղծությունների ժողովածուն, ուր երգվում է սովետական հայրենասիրությունը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն ու ստեղծարար աշխատանքը, Աշոտ Գրաշու «Խաղաղու-

թյան զինվորները» բանաստեղծու-թյունների ժողովածուն, Գեղամ Սար-յանի «Հրաշալի սերունդ» պոեմը, Նաիրի Զարյանի «Արմենուհի» պոեմը և նրա մի շարք հրապարակախոսական հոդվածներն ընդդեմ պատերազմի հրձիգների, ի պաշտպանություն խա-ղաղության։

Զգալիորեն բարելավվել է մանկա-կան գրականությունը։ Վերջին երկու տարվա ընթացքում լույս տեսան Վ. Անանյանի «Սևանի ափին» վիպակը, Ստեփան Զորյանի «Մարաշենի տղա-ները» վիպակը, որը նվիրված է պա-տանի միչուրինականների աշխատան-քին, Հովհաննես Ղուկասյանի «Փոքրիկ վրիժառուները» վիպակը։

Սովետահայ գրականության ամե-նալուրջ թերությունն այն է, որ դեռ շարունակում է ետ մնալ արձակը։ Թեև հաշվետու ժամանակաշրջանում լույս են տեսել մի շարք խոշոր երկեր, այ-նուամենայնիվ դրանց մեծ մասը չեն բավարարում սովետական ընթերցողի աճած պահանջները։ Այդ երկերի ընդ-հանուր թերությունը, ամենից առաջ, դրանց գեղարվեստական ցածր մա-



կարդակն է։ Մեր արձակագիրները քիչ են աշխատում իրենց պրոֆեսիո-նալ մակարդակը բարձրացնելու հա-մար։ Նրանց ստեղծած հերոսների կերպարները բավականաչափ մշակ-ված չեն, որի հետևանքով նրանք հե-ռու են սովետական մարդկանց իսկա-կան կերպարները լինելուց։ Կոնֆլիկտ-ները բավականաչափ մտածված չեն, սխեմատիկ են, հորինված, կամ պար-զապես վերակրկնվում է այն, ինչ ըն-թերցողին արդեն հայտնի է սովետա-կան մյուս գրողների երկերից։ Երկե-րի մեծ մասը անավարտության և ան-մշակության կնիք է կրում։

Սովետահայ գեղարվեստական գրա-կանության թերությունների պատճառ-ներից մեկը գրական քննադատության անբավարար վիճակը և չափազանց ցածր մակարդակն է։ Գրական քննա-դատությունը գրողներին ցույց չի տա-լիս գեղարվեստական գրականության թերությունները և չի օգնում դրանց վերացմանը։

Գրականության մեջ նշված թերու-թյունների առկայության մյուս պատ-ճառը գրականության երկերի քննարկ-

ման և հասարակական քննադատության համարյա լիակատար բացակայությունն է Հայաստանի Սովետական գրողների միությունում։

Քննադատության նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունքը հասցնում է պարփակվածության, հասարակական կարծիքի անտեսման, այն բանին, որ հեղինակները գերագնահատում են իրենց երկերը, անբավարար է ստեղծագործական մրցությունը առաջավոր սովետական գրողների հետ։

Անհրաժեշտ է, որ Հայաստանի Սովետական գրողների միության վարչությունը և պարտիական կազմակերպությունը իրենց հետագա աշխատանքում կարողանան վերացնել վերը նշված թերությունները, գրողների ուշադրությունը կենտրոնացնեն գեղարվեստորեն լիարժեք ու գաղափարապես բարձր երկեր ստեղծելու վրա, որոնք ճշմարտացիորեն արտացոլեն կոմունիստական հասարակակարգի կառուցումը և սովետական մարդկանց հերոսական կյանքը։

Հաշվետու ժամանակաշրջանը բնու-



թագրվում է Սովետական Հայաստանի արվեստի բոլոր բնագավառների հետագա վերելքով։ Այդ ժամանակաշրջանը հանդիսացավ թատրոնների ռեպերտուարի մեջ դեպի սովետական ու սովետահայ դրամատուրգիան վճռական շրջադարձի ժամանակաշրջան։

Օրիգինալ դրամատուրգիան նվիրվում է ռեսպուբլիկայի հետպատերազմյան կյանքի ակտուալ հարցերին և ռեսպուբլիկայի առջև կանգնած տնտեսական-քաղաքական խնդիրներին։

«Դրամատիկական թատրոնների ռեպերտուարի մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման ճիշտ ըմբռնումն ու իրականացումը ապահովեց նշված հաջողությունները։

Սունդուկյանի անվան թատրոնը բեմադրեց երիտասարդ դրամատուրգներ Գ. Տեր-Գրիգորյանի և Լ. Ղարագյոզյանի «Այս աստղերը մերն են» պիեսը, որ նվիրված է սովետական երիտասարդության և նրա պայքարին հանուն առաջավոր սովետական գիտության պրիորիտետի։ Վերջերս թատրոնը բեմադրեց Մ. Օվչիննիկովի «Խիղախում»

պիեսը, որը նվիրված է այնպիսի կարևոր հարցի, ինչպիսին է պայքարը անասնաբուծության մթերատվության բարձրացման համար։

Ստանիսլավսկու անվան ռուսական թատրոնը հաջողությամբ բեմադրեց դրամատուրգ Մ. Ջամանյանի «Մեր թանկագին հյուրերը» պիեսը, որն արտացոլում է արդյունաբերական խոշոր օբեկտների շինարարությունն ու սոցիալիստական մրցության ուժը։

Վատ չէ Ն. Զարյանի «Աղբյուրի մոտ» պիեսի բեմադրությունը Լենինականի դրամատիկական թատրոնում։

Խիստ կերպով բարելավվել է նաև ռայոնական թատրոնների ռեպերտուարը, որոնք բեմադրում են սովետական թեմատիկայով պիեսներ։

Վերջին երկու տարվա ընթացքում զգալի վերելք է նկատվում ռեսպուբլիկայի երաժշտական կյանքում։

Ղեկավարվելով Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ՝ Հայաստանի կոմպոզիտորները, հաղ-



թահարելով ֆորմալիզմի, գաղափարազրկության արտահայտությունները, ստեղծեցին զանազան ժանրի մի շարք հաջող երաժշտական երկեր, որոնց թվում պետք է նշել Ա. Հարությունյանի «Հայրենիք» կանտատան, Ա. Բաբաջանյանի՝ «Հերոսական բալլադան», Է. Միրզոյանի՝ «Հայաստան» կանտատան, Կ. Զաքարյանի «Փառք Հայրենիքի»-ն, Գ. Չեբոտարյանցի սրբլյուդները և այլ կոմպոզիտորների մի ամբողջ շարք երգեր։

Հատկապես պետք է նշել «Հերոսուհին» օպերայի ստեղծումը կոմպոզիտոր Հարո Ստեփանյանի կողմից, որն անցյալում իր ստեղծագործությունների մեջ ֆորմալիստական լուրջ սխալներ էր թույլ տալիս, տարվելով ժողովրդին անհասկանալի «ընտիր» երաժշտություն ստեղծելով։ «Հերոսուհին» օպերայի երաժշտությունը, որ գրված է այսօրվա ակտուալ թեմայով, աչքի է ընկնում իր ժողովրդայնությամբ և գեղարվեստական բարձր մակարդակով։

Հասարակայնությունը լավ ընդունեց կոմպոզիտոր Տեր-Ղևոնդյանի «Արե-

դակի ցուլքերում» մանկական օպե-
րան։

Հայաստանի երաժշտական արվես-
տի նվաճումն է հանդիսանում ժողո-
վրդական մեղեդիների ճիշտ օգ-
տագործումը, կլասիկ երաժշտության
տրադիցիաների հետագա զարգացու-
մը և խոշոր ձևի երաժշտական հաջող
երկերի երևան գալը։

Հայկական ֆիլհարմոնիան և Ռա-
դիոինֆորմացիայի կոմիտեն պետք է
վերացնեն պրիմիտիվությունը սովե-
տական երաժշտության պրոպագան-
դայի ասպարեզում, թույլ չտան որոշ
սովետական կոմպոզիտորների ցած-
րորակ, անհաջող երկերի կատարու-
մը։ Նրանք պետք է սովետական ե-
րաժշտությունը մասսայականացնեն
ինչպես սովետահայ կոմպոզիտորնե-
րի, այնպես էլ եղբայրական ռես-
պուբլիկաների կոմպոզիտորների
միայն լավագույն ստեղծագործու-
թյունների միջոցով։

Աշխատավորների երաժշտական
դաստիարակությունը միաժամանակ
պետք է ընթանա նաև հայկական,
ռուսական և Սովետական Միության



մյուս ժողովուրդների երաժշտական
կուլտուրայի կլասիկ ժառանգության
հետ նրանց լայնորեն ծանոթացնելու
ուղղությամբ։

Որոշակի հաջողություններ է ձեռք
բերել նաև Հայաստանի կերպար-
վեստը։

Խոշոր իրադարձություն է հանդի-
սանում ընկեր Ի. Վ. Ստալինի հոյա-
կապ մոնումենտ-քանդակի կառուցու-
մը Երևանում, ի նշան մեծ Ստալինի
նկատմամբ հայ ժողովրդի ջերմ սի-
րո, նվիրվածության և խորին երախ-
տագիտության։ (Ծափահարություն-
ներ)։

Սովետական վարպետների՝ քանդա-
կագործ Մերկուրովի և ճարտարապետ
Ռ. Իսրայելյանի այդ հիանալի աշ-
խատանքը հայկական ճարտարապե-
տության պատմության մեջ կմտնի
իբրև ամենաաչքի ընկնող ստեղծա-
գործություն, որն արտացոլում է
Ստալինյան դարաշրջանի վեհությու-
նը։ (Ծափահարություններ)։

Քանդակագործության լավագույն
ստեղծագործությունների շարքը պետք
է դասել նաև քանդակագործ Ս. Ստե-

միանյանի գործը՝ Խաչատուր Աբովյանի արձանը, որ կանգնեցված է Երևան քաղաքում։

Գեղանկարչության բնագավառում լավագույն ստեղծագործություններ են հանդիսանում նկարիչ Մ. Աբեղյանի «Ի. Վ. Ստալինի ելույթը Թիֆլիսի բանվորական ժողովում, 1905 թվականին», Օ. Զարդարյանի «Սևանցինցիները», Էդ. Իսաբեկյանի «Փոթորկից առաջ» նկարները և այլ աշխատանքներ։

Շարունակում է ետ մնալ կինոարվեստը, որը վատ պատկեր է ներկայացնում Հայաստանի արվեստի և կուլտուրայի ընդհանուր վերելքի ու ծաղկման ֆոնի վրա։

Երկար ժամանակ կինոարվեստի ետ մնալը բացատրվում է գլխավորապես Երևանի կինոստուդիայի ստեղծագործական աշխատողների մի մասի ցածր որակավորմամբ, որոնք լրիվ չափով չեն հասկանում ժամանակակից հարցերը, կտրված են սովետական մարդկանց հերոսական ստեղծարար աշխատանքից։

Հայաստանի Կինեմատոգրաֆիայի



մինիստրությունը պետք է բարձրացնի իր պահանջկոտությունը կադրերի նկատմամբ և օր-ավուր ղեկավարի գեղարվեստական ու դոկումենտալ ֆիլմերի բարձրորակ սցենարիաներ ստեղծելու աշխատանքը, որպեսզի կարողանա ամենակարճ ժամանակում Երևանի կինոստուդիան դուրս բերել լճացման վիճակից։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները և ՍՍՌՄ Կինեմատոգրաֆիայի մինիստրությունը պետք է ամեն կերպ օգնեն Երևանի կինոստուդիային՝ գաղափարապես բարձր ու գեղարվեստորեն լիարժեք կինոնկարներ ստեղծելու գործում։

Երևանի կինոստուդիայի արտադրանքից խիստ տարբերվում է «Սովետական Հայաստան» նոր գունավոր դոկումենտալ ֆիլմը, որ նկարահանել է կինոռեժիսոր Ա. Օվանեսովան և երաժշտորեն ձևավորել է կոմպոզիտոր Ա. Սաթյանը։ Այս ֆիլմը աչքի է ընկնում իր բարձր գեղարվեստականությամբ, երաժշտականությամբ և մեծ համոզչականությամբ։

Հաշվետու տարիներին ինչպես քա-

*ղաքներում, այնպես էլ գյուղերում տեղի էր ունենում կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցի հետագա ընդարձակումը ակումբների, գրադարանների, ընթերցարանների, կինոթատրոնների և կուլտուր-լուսավորական այլ հիմնարկների կառուցման միջոցով։*

*Ընդարձակվում էր նաև ռադիոտրանսլյացիոն ցանցը, ամրապնդվում մասսայական ֆիզկուլտուրային-սպորտային աշխատանքի բազան։*

*Թույլ է զարգանում աշխատավորների ինքնագործունեությունը։ Ակումբներին կից ինքնագործ խմբակները գոյություն ունեն ձևականորեն. և որոշ չափով աշխուժանում են միայն ռեսպուբլիկական ստուգատեսների ու օլիմպիադաների ժամանակ։ Շրջսովետների գործկոմների կուլտ-լուսհիմնարկների բաժինները և պարտիայի շրջկոմների պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինները վատ են ղեկավարում այդ գործը։*

*Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կուլտուր-լուսավորական հիմնարկների գործերի կոմիտեն աշ-*



*խատում է ոչ օպերատիվ, նա կտրված է իր օբեկտներից և բավարարվում է հաճախ մտացածին թվական ցուցանիշներով։*

*Կենտկոմը և Մինիստրների Սովետը պետք է համապատասխան հետևություններ անեն և Կուլտուր-լուսավորական հիմնարկների գործերի կոմիտեն ամրացնեն այնպիսի կադրերով, որոնք կարողանան վճռականորեն բարելավել կուլտուր-լուսավորական աշխատանքի ղեկավարումը գյուղում, բարձրացնել աշխատանքի գաղափարական մակարդակը, կուլտուր-լուսավորական հիմնարկները դարձնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության, դեպի աշխատանքը սոցիալիստական վերաբերմունքի դաստիարակման օջախներ, որոնք բարձրացնեն գյուղի ընդհանուր կուլտուրան։*

*Հաշվետու ժամանակաշրջանում, 1949—1950 թվականին, սոցիալիստական տնտեսության և ազգային եկամտի աճման հիմքի վրա տեղի էր ունենում աշխատավորների նյութական բարեկեցության և քաղաքների*

ու գյուղերի բնակչության կուլտուրական մակարդակի հետագա բարձրացում։

Քարտային սիստեմը վերացնելուց հետո սովետական կառավարությունը չորս անգամ իջեցրեց մասսայական սպառման ապրանքների մանրածախ գները։

Գների իջեցման հետևանքով աճեցին բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլխոզնիկների եկամուտները, բարձրացավ բնակչության գնողունակությունը։

1950 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, մասսայական սպառման ապրանքներ ավելի են վաճառվել հետևյալ չափերով.

| | | |
|---|---|---|
| մսամթերքներ— | 65 տոկոսով | |
| ճարպեր— | 97 | » |
| պանիր— | 73 | » |
| շաքար— | 50 | » |
| հրուշակեղեն— | 96 | » |
| մակարոնեղեն— | 20 | » |

և այլն։

Նաև աճել է արդյունաբերական ապրանքների համարյա բոլոր տեսակների իրացումը։



1950 թվականին վաճառվել են՝ բամբակյա

| | | | |
|---|---|---|---|
| գործվածքներ՝ | 40 | տոկոսով | ավելի |
| տրիկոտաժեղեն՝ | 60 | » | » |
| կաշվե կոշկեղեն՝ | 23 | » | » |
| ռետինե կոշկեղեն՝ | 109 | » | » |
| լվացքի օճառ՝ | 178 | » | » |

Հաշվետու ժամանակաշրջանում նաև ընդարձակվել է ունիվերմագների, խանութների ու կրպակների ցանցը։ Զգալիորեն ավելացել է կոլխոզների ու կոլխոզնիկների կողմից գյուղատնտեսական մթերքների ներմուծումը քաղաքների համար։

Մեծ չափով բարելավվել է քաղաքների և գյուղերի բնակչության կոմունալ սպասարկումը։ Կատարվել է ջրմուղների, բաղնիքների, ճանապարհների, փողոցների ու հրապարակների լայն շինարարություն, բնակավայրերի կանաչապատում, ընդարձակվել ու բարելավվել է քաղաքային տրանսպորտը և ավտոերթևեկությունը քաղաքների ու շրջկենտրոնների միջև։

Վերջին երկու տարվա ընթացքում զգալիորեն ավելացել է էլեկտրաէներ-

գիայի մատակարարումը բնակավայրերին։

Լայնորեն ծավալվեց բնակարանային շինարարությունը քաղաքներում, շրջանային կենտրոններում, բանվորական ավաններում և գյուղերում։ 1949 թվականին քաղաքներում և շրջանային կենտրոններում կառուցվեց ու շահագործման հանձնվեց ավելի քան 66 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ 1950 թվականին շահագործման հանձնվեց մոտ 57 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Բացի դրանից, երկու տարվա ընթացքում բանվորները, ծառայողները և կոլխոզնիկները քաղաքներում ու շրջանային կենտրոններում կառուցել են մոտ 6.000 անհատական տուն, իսկ գյուղական վայրերում կառուցված է ավելի քան 5.000 անհատական տուն։

Բարելավվել է քաղաքների և գյուղերի բնակչության բուժսպասարկումը։

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 14-րդ համա-



գումարում խոշոր թերություններ նրշվեցին գյուղում բժշկական օգնությունը կազմակերպելու բնագավառում։

Անցած տարիների ընթացքում գյուղում մեծ չափով ընդարձակվել է բուժհիմնարկների՝ հիվանդանոցների, ծննդատների, պոլիկլինիկաների, ամբուլատորիաների, կանանց ու մանկական կոնսուլտացիաների ցանցը։ Ավելի քան 300 բժիշկներ քաղաքներից մշտական աշխատանքի են ուղարկվել գյուղական վայրերը։

Ճահիճների ցամաքեցման մեծ աշխատանքների և առողջացուցիչ այլ միջոցառումների կիրառման շնորհիվ մեծ չափով կրճատվել է մալարիա հիվանդությունը։ Բարելավվել է բնակչության կուրորտային սպասարկումը։

Բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու ասպարեզում ձեռք բերված հաջողությունների հետ միասին այդ գործում դեռ կան խոշոր թերություններ։

Չի կարելի բավարար համարել բնակարանային շինարարության տեմպը կոլխոզներում։ Նկատի ունենալով, որ գյուղի բնակարանները չեն համա-

պատասխանում սանիտարական պահանջներին, անհարմար են և անհամապատասխան կոլխոզնիկների բարեկեցության ներկա մակարդակին, անհրաժեշտ է մոտակա տարիների ընթացքում լայնորեն ծավալել բնակելի տների կառուցումը կոլխոզներում։

Այս կապակցությամբ Հայտնարկոմը և Հայկոոպը պետք է ուժեղացնեն շինանյութերի և մասնավորապես, փայտեղենի ներմուծումը։

Կոլխոզներում ամենուրեք պետք է ծավալել բարեկարգված փողոցների կառուցումը և կանաչապատման աշխատանքները։

Առողջապահության բնագավառում պետք է շարունակել հիվանդանոցային և ծննդատան մահճակալների ցանցի հետագա ընդարձակումը, ավելացնել գյուղում աշխատող բժիշկների ու միջին բուժանձնակազմի քանակը և ընդարձակել մանկապարտեզների ու մսուրների ցանցը։

Առողջապահության մինիստրությունը պետք է մոտակա երկու տարվա ընթացքում ավարտի բնակչության



մասնագիտացված բուժսպասարկման կազմակերպումը բոլոր շրջաններում։

Մեր խնդիրն է՝ վերացնել թերությունները և մոտակա տարիներին բոլոր միջոցներով ձգտել բարձրացնելու բնակչության, հատկապես գյուղական բնակչության, կուլտուր-կենցաղային մակարդակը և բարձրացնել բնակչության կոմունալ սպասարկման կուլտուրան։

## ՆԵՐՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 14-րդ համագումարից հետո շարունակվում էր աշխատանքը պարտիական շարքերն ամրապնդելու ուղղությամբ, տեղի էր ունենում պարտիական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական մակարդակի աճ և պարտիայի որակական կազմի հետագա բարելավում։

Հայաստանի պարտիական կազմակերպության կազմը 15-րդ համագու-

մարի պահին բնութագրվում է հետևյալ տվյալներով.

Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի շարքերում առ 1-ն մարտի 1951 թվականի կա 61.625 կոմունիստ, այդ թվում պարտիայի անդամներ՝ 56.174 մարդ, պարտիայի անդամության թեկնածուներ 5.451 մարդ, մինչդեռ Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարի ժամանակ եղել է 61.440 կոմունիստ, այդ թվում 53.375 անդամ և 8.065 թեկնածու։

Այդպիսով, Հայաստանի պարտիական կազմակերպությունն աճել է 185 մարդով, թեև Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարից հետո անցած երկու տարվա ընթացքում պարտիայի շարքերն են ընդունվել 3.536 մարդ։

Պարտիական կազմակերպության թվական կազմի ոչ մեծ աճը բացատրվում է գլխավորապես նրանով, որ 1.800 կոմունիստ, վերաբնակների հետ միասին, փոխադրվել են Ադրբեջանական ՍՍՌ։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները ճիշտ կենսագործեցին պարտիայի աճման հարցի վերա-



բերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի տված դիրեկտիվը, հրաժարվեցին պարտիայի շարքերի թվական աճի արագ տեմպից, ճշտիվ պահպանեցին պարտիայի մեջ ընդունելիս անհատական ընտրություն կատարելու սկզբունքը, որի հետևանքը եղավ պարտիայի շարքերի որակական կազմի բարելավումը։

Սակայն մի շարք շրջկոմներ և սկզբնական պարտիական կազմակերպություններ սխալ իրականացրին այդ դիրեկտիվը, ընկան մի այլ ծայրահեղության մեջ և համարյա դադարեցրին ընդունելությունը պարտիայի շարքերը․

1949 թվականի ընթացքում Կալինինոյի շրջկոմը պարտիայի մեջ է ընդունել 3 մարդ, Ապարանի շրջկոմը՝ 6 մարդ, Վեդու շրջկոմը՝ 9 մարդ, Սևանի շրջկոմը՝ 7 մարդ, իսկ 1950 թվականի ընթացքում նախկին Միկոյանի շրջկոմը պարտիայի մեջ է ընդունել ընդամենը 5 մարդ։

Ձեռնարկությունների առանձին սկզբնական պարտկազմակերպություններ, որոնք ունեն առաջատար պրոֆեսիաների պատկանող մեծ քա-

նակությամբ որակյալ կադրեր, նույնպես քիչ մարդ են ընդունել պարտիայի մեջ։ Օրինակ՝ էլեկտրամեքենաշինական գործարանում Հաշվետու շրջանում պարտիայի մեջ է ընդունվել 20 մարդ, Կիրովի անվան գործարանում՝ 38 մարդ, Ղափանի հանքվարչությունում՝ 16 մարդ, Լենինականի տեքստիլ կոմբինատում՝ 36 մարդ և Գյումուշշինում՝ 10 մարդ։

Այդ պարտիական կազմակերպությունների ղեկավարները պարտիայի մեջ ընդունվողների անհատական ընտրություն կատարելու դիրեկտիվը փոխարինել են նրանով, որ փաստորեն դադարեցրել են բանվորների, կոլխոզնիկների ու ինտելիգենցիայի առաջավոր մարդկանց ընդունելությունը պարտիայի մեջ, որոնք աշխատանքով ապացուցել են իրենց նվիրվածությունը մեր Հայրենիքին։

Որոշ կազմակերպությունների աշխատանքում՝ Ղափանի, Գորիսի, Ալավերդու և Սիսիանի շրջանների պարտկազմակերպություններում, հախուռն մոտեցում են ցուցաբերել պարտիայի մեջ ընդունելու գործին, բավականա-



չափ չեն ուսումնասիրել ընդունվողներին, որի հետևանքով պարտիայի մեջ են թափանցել անարժան, վստահություն չվայելող անձինք, իսկ առանձին դեպքերում պարտիայի թշնամի տարրեր։

Պետք է ասել, որ վերջին ժամանակներս պարտիական կազմակերպությունների մեծ մասը բարելավել է իր աշխատանքը, ուժեղացրել է անհաշտվողականությունը պարտիական ու պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ և իր շարքերը հաջողությամբ մաքրում էր պարտիայի անդամի բարձր կոչումը կրելուն անարժան անձերից։

Նախորդ՝ 14-րդ համագումարի պահին եղած թեկնածուների թվի համեմատությամբ, պարտիայի թեկնածուների թվական կազմի որոշ նվազումը բացատրվում է նրանով, որ բարելավվել է պարտիական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքը պարտիայի թեկնածուների հետ, որոնք ներգրավվել են պարտիական կազմակերպությունների հասարակական-քաղաքական աշխատանքի

*նակությամբ որակյալ կադրեր, նույնպես քիչ մարդ են ընդունել պարտիայի մեջ։ Օրինակ՝ էլեկտրամեքենաշինական գործարանում Հաշվետու շրջանում պարտիայի մեջ է ընդունվել 20 մարդ, Կիրովի անվան գործարանում՝ 38 մարդ, Ղափանի հանքվարչությունում՝ 16 մարդ, Լենինականի տեքստիլ կոմբինատում՝ 36 մարդ և Գյումուշշինում՝ 10 մարդ։*

*Այդ պարտիական կազմակերպությունների ղեկավարները պարտիայի մեջ ընդունվողների անհատական ընտրություն կատարելու դիրեկտիվը փոխարինել են նրանով, որ փաստորեն դադարեցրել են բանվորների, կոլխոզնիկների ու ինտելիգենցիայի առաջավոր մարդկանց ընդունելությունը պարտիայի մեջ, որոնք աշխատանքով ապացուցել են իրենց նվիրվածությունը մեր Հայրենիքին։*

*Որոշ կազմակերպությունների աշխատանքում՝ Ղափանի, Գորիսի, Ալավերդու և Սիսիանի շրջանների պարտկազմակերպություններում, հախուռն մոտեցում են ցուցաբերել պարտիայի մեջ ընդունելու գործին, բավականա-*



*չափ չեն ուսումնասիրել ընդունվողներին, որի հետևանքով պարտիայի մեջ են թափանցել անարժան, վստահություն չվայելող անձինք, իսկ առանձին դեպքերում պարտիային թշնամի տարրեր։*

*Պետք է ասել, որ վերջին ժամանակներս պարտիական կազմակերպությունների մեծ մասը բարելավել է իր աշխատանքը, ուժեղացրել է անհաշտվողականությունը պարտիական ու պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ և իր շարքերը հաջողությամբ մաքրում էր պարտիայի անդամի բարձր կոչումը կրելուն անարժան անձերից։*

*Նախորդ՝ 14-րդ համագումարի պահին եղած թեկնածուների թվի համեմատությամբ, պարտիայի թեկնածուների թվական կազմի որոշ նվազումը բացատրվում է նրանով, որ բարելավվել է պարտիական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքը պարտիայի թեկնածուների հետ, որոնք ներգրավվել են պարտիական կազմակերպությունների հասարակական-քաղաքական աշխատանքի*

մեջ, նրանց գործնական օգնություն է ցույց տրվել իրենց քաղաքական մակարդակը բարձրացնելու գործում։

Այնինչ, այդ ասպարեզում մենք դեռ շատ թերություններ ունենք։

Որոշ պարտիական կազմակերպություններում ընկերները չափազանց երկար ժամանակ մնում են պարտիայի թեկնածու։ Այնպիսի շրջաններում, ինչպիսիք են Վեդու, նախկին Միկոյանի, Էջմիածնի, Կոտայքի, Հոկտեմբերյանի, Ախտայի, Արտաշատի շրջանները, ժամկետանց ստաժ ունեցող թեկնածուների թիվը թեկնածուների ամբողջ կազմի 70 տոկոսից ավելի է։ Այդ շրջաններում պարտիայի թեկնածուները չեն ընդգրկվել պարտիական լուսավորության սիստեմում, չեն ներգրավվել պարտիական և հասարակական հանձնարարությունների կատարմանը, որի հետևանքով պարտիայի թեկնածուներից շատերը ցույց չեն տվել իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ։

Պարտիական կազմակերպություններն իրենց հետագա աշխատանքում պետք է խստիվ կատարեն ՀամԿ(բ)Պ



Կենտկոմի այն դիրեկտիվները, որոնք պահանջում են խստիվ ուսումնասիրել, անհատական ընտրություն կատարել և պարտիայի շարքերն ընդունել առաջավոր մարդկանց, մանավանդ առաջատար պրոֆեսիաների պատկանողներին։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն պարտիայի թեկնածուների հետ իրենց դաստիարակչական աշխատանքը, ներգրավելով նրանց սկզբնական պարտիական կազմակերպությունների ամենօրյա գործնական աշխատանքի մեջ, ամեն կերպ կրճատելով թեկնածուական ժամկետանց ստաժ ունեցող թեկնածուների թիվը։

Փոփոխված պայմանների կապակցությամբ, հաշվետու շրջանում Հայաստանի պարտկազմակերպություններում կազմակերպական որոշ փոփոխություններ են կատարվել։

Այդ փոփոխությունների պատճառն այն էր, որ ադրբեջանական բնակչության մի մասը փոխադրվել է Ադրբեջանական ՍՍՌ և մի քանի այլ շրջաններ՝ մշտական բնակություն հաստա-

տելու համար և այդ կապակցությամբ նվազել է բնակչության թիվը։

Փոփոխություններ են տեղի ունեցել նաև փոքր կոլխոզների խոշորացման հետևանքով։ Մի քանի շրջաններում կոլխոզների թիվը իջել է մինչև տասի, ութի և նույնիսկ յոթի։

Նկատի ունենալով, որ ռեսպուբլիկական օրգանները բարելավել են տեղերի ղեկավարումը և ուժեղացրել են իրենց օպերատիվությունը, փոքր շրջաններում կառավարման շրջանային օրգանների գոյությունը դարձավ ավելորդ և վարչական ծախսերը շարդարացվող։

Այս կապակցությամբ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը հարց հարուցեց որոշ շրջաններ, այն է Ալագյազի շրջանը՝ Ապարանի, Կարաբաղլարի շրջանը՝ Վեդու, Դիլիջանի շրջանը՝ Իջևանի, Ազիզբեկովի շրջանը՝ Միկոյանի և Ղուկասյանի շրջանը՝ Ամասիայի շրջանի հետ միավորելու հարցը։

Կազմակերպական այդպիսի փոփոխությունները հնարավորություն են տալիս տնտեսապես ամրապնդել այդ



շրջանները, ընդարձակել մեքենա-տրակտորային կայանների աշխատանքը և ավելի լավ օգտագործել պարտիական, սովետական ու գյուղատնտեսական կադրերը։

Երևան քաղաքի բնակչության աճի և Քանաքեռի սարահարթի վրա արդյունաբերական նոր ձեռնարկությունների ստեղծման կապակցությամբ, կազմակերպվեց նոր քաղաքային ռայոն՝ Միկոյանի ռայոնը։

Կոլխոզների խոշորացումը որոշ փոփոխություններ առաջացրեց նաև կոլխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունների կառուցվածքի մեջ։ Այդ փոփոխությունները կայանում են նրանում, որ միացած կոլխոզների պարտկազմակերպությունները նույնպես միացան, դարձան միասնական պարտկազմակերպություն՝ միասնական պարտիական բյուրոյով։ Այդ կապակցությամբ միացած գյուղերի սկզբնական պարտիական կազմակերպությունների մի մասը վերակազմվեցին որպես պարտիական խմբեր։ Դրա հետևանքով կոլխոզային սկզբնական պարտիա-

կան կազմակերպությունների ընդ-
հանուր թիվն իջավ մինչև 353-ի։
Կոլխոզային պարտկազմակերպու-
թյունների միացման դրական կողմը
պետք է համարել այն, որ այդ պարտ-
կազմակերպությունները դարձան ա-
վելի խոշոր, ավելի բազմամարդ։
Կոլխոզի կյանքին վերաբերող հար-
ցերը քննարկվում են բազմակողմա-
նիորեն, ուժեղանում է պարտիական
վերահսկողությունը կոլխոզի վարչու-
թյան գործունեության նկատմամբ և
պայմաններ են ստեղծվում պարտ-
կազմակերպության բյուրոյի ավելի
լավ կազմ՝ քարտուղարներ և պարտ-
կազմակերպիչներ ընտրելու համար։
Կոլխոզային սկզբնական պար-
տիական կազմակերպությունների խո-
շորացման կապակցությամբ և այդ
կազմակերպությունների համար քար-
տուղարներ պատրաստելու անհրա-
ժեշտությունից ելնելով, Հայաստանի
Կ(բ)Պ Կենտկոմը կազմակերպեց
միամսյա դասընթացներ և նոյեմբեր—
դեկտեմբեր—հունվար ամիսներին այդ
դասընթացներում սովորեցրեց կոլխո-
զային պարտկազմակերպությունների



403 քարտուղար, այդ թվում խոշո-
րացված կոլխոզների պարտիական
կազմակերպությունների համարյա
բոլոր քարտուղարներին։
Պարապմունքների լայն ծրագիրը,
որը մեծ հետաքրքրություն առաջաց-
րեց դասընթացներում սովորողների
մեջ, անտարակույս դրական ար-
դյունքներ կտա արդեն ամենամոտ
ժամանակում, եթե պարտիայի շրջ-
կոմները սիստեմատիկ աշխատանք
կատարեն դասընթացներն ավարտած-
ների հետ։
Կոլխոզների խոշորացման կա-
պակցությամբ, կոլխոզային սկզբնա-
կան պարտկազմակերպությունների
միացումը պահանջում է, որ շրջկոմ-
ները մեծ չափով բարելավեն կոլ-
խոզների սկզբնական պարտկազմա-
կերպությունների ղեկավարությունը,
որ պարտիայի շրջկոմների աշխա-
տողները ուժեղացնեն կենդանի կա-
պը կոլխոզային պարտիական կազ-
մակերպությունների հետ և ամենօրյա
գործնական օգնություն ցույց տան
նրանց։
Աշխատանքում պետք է լայնորեն

կիրառել սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարության առավել գործուն ձևը՝ շրջկոմների նիստերում նրանց աշխատանքի մասին հաշվետվություններ լսելը։ Այնինչ, բոլոր շրջկոմները չեն, որ հաշվետվություններ են լսում բյուրոների նիստերում։ Օրինակ, պարտիայի Ալավերդու շրջկոմը 1950 թվականին 98 սկզբնական պարտկազմակերպություններից ստուգել է միայն 3 սկզբնական պարտկազմակերպության աշխատանքը և զեկուցումներ է լսել նրանց աշխատանքի մասին։

Կրասնոսելսկի շրջկոմը 36 սկզբնական պարտկազմակերպություններից լսել է միայն երկուսի հաշվետվությունը, Սպիտակի շրջկոմը՝ 58 սկզբնական պարտկազմակերպություններից լսել է երեքի հաշվետվությունը, Վեդու շրջկոմը՝ 75 սկզբնական կազմակերպություններից լսել է երկուսի հաշվետվությունը և նախկին Միկոյանի շրջկոմը՝ 47 սկզբնական պարտկազմակերպություններից լսել է 4-ի հաշվետվությունը։

Վերոհիշյալ շրջկոմներն իրենց ամ-



բողջ ղեկավարությունը սահմանափակել են տնտեսական մանր հարցերի լուծմամբ և օգնություն չեն ցույց տվել սկզբնական պարտկազմակերպություններին՝ նրանց աշխատանքում եղած թերությունները հաղթահարելու գործում։

Այդ բոլորի հետևանքը եղավ, ըստ էության, սկզբնական պարտկազմակերպությունների դերի անտեսումը և կոլխոզի գործերի վիճակի համար նրանց պատասխանատվության նվազեցումը։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները ղեկավարելու ուղղությամբ կատարվող հետագա աշխատանքում, նրանց հաշվետու զեկուցումները շրջկոմների նիստերում լսելու հետ միասին, շրջկոմների աշխատողները՝ քարտուղարները, շրջկոմի բյուրոյի անդամները և բաժնի վարիչները, պետք է անմիջականորեն մասնակցեն կոլխոզներում յուրաքանչյուր պարտիական ժողովի նախապատրաստմանն ու անցկացմանը, տեղում գործնական օգնություն ցույց

տան պարտիական աշխատանքը կազմակերպելու գործում։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարման գործի բարելավումը շրջկոմներից հաստատակամորեն պահանջում է վերացնել ավելորդ, բծախնդիր խնամակալությունը և շրջանի սովետական ու տնտեսական օրգաններին փոխարինելու պրակտիկան, պահանջում է պարտիական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնել վերահսկողության վրա և կատարել պարտիայի ու կառավարության դիրեկտիվները։

Այս տեսակետից՝ Կալինինոյի, Ապարանի, Կրասնոսելսկի, Ալավերդու, Վեդու և Հոկտեմբերյանի շրջանների շրջկոմներից նախ և առաջ պահանջվում է վերակառուցել իրենց աշխատանքը և վերացնել ղեկավարման վարչական մեթոդները, որպեսզի, բարձրացնելով պարտիական-քաղաքական աշխատանքի մակարդակը, ապահովվի այն նոր, ավելի բարդ տնտեսական-քաղաքական խնդիրների կատարումը, որոնք ներկայումս



դրված են պարտիական կազմակերպությունների առջև։

Հաշվետու շրջանում Հայաստանի պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել կոմունիստների մարքսիստական-լենինյան դաստիարակության ուղղությամբ։ Զգալիորեն աճել է պարտիայի անդամների գաղափարական մակարդակը և ընդարձակվել է նրանց մտահորիզոնը։

Պարտիական լուսավորության գործը կարգավորվելու հետևանքով, որ տեղի է ունեցել այդ հարցի առթիվ Համ. Կ(բ)Պ Կենտկոմի ընդունած որոշումից հետո, մեծ չափով փոխվել է կոմունիստների վերաբերմունքը դեպի քաղաքական ուսուցումը։

Քաղխմբակներում որոշակի ծրագրով և հաստատուն պլանով անցկացվող սիստեմատիկ պարապմունքները, բոլշևիզմի թեորիան և պատմությունը ինքնուրույն կերպով ուսումնասիրողներին օգնելու համար սիստեմատիկաբար կոնսուլտացիաներ և դասախոսություններ կազմակերպելը զգալիորեն բարձրացրին

կոմունիստների գաղափարական-թեորիական պատրաստությունը։

Կոմունիստների բոլշևիկյան դաստիարակության գործում բացառիկ մեծ դեր խաղաց ընկեր Ստալինի «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ը աշխատությունը և Վ. Ի. Լենինի ու Ի. Վ. Ստալինի երկերի հրատարակումը հայերեն լեզվով։

«ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ն ուսումնասիրած պարտիայի անդամը սկսել է ավելի լավ կողմնորոշվել քաղաքական իրադրության մեջ, ավելի խոր ըմբռնել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտիվներն ու որոշումները, ավելի համարձակ ու ակտիվորեն ղեկավարել աշխատանքի նրան հանձնարարված բնագավառը և ավելի մեծ նախաձեռնություն ցուցաբերել սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքում։

Այդ բոլորը դրական կերպով անդրադարձավ սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի, նրանց գաղափարական մակարդակի բարձրացման վրա։

Ներկայումս խմբակներում և քաղ-



դպրոցներում պարապում է ավելի քան 34 հազար կոմունիստ և ավելի քան 20 հազար կոմունիստներ ինքնուրույն կերպով ուսումնասիրում են բոլշևիզմի թեորիան ու պատմությունը։

Պարտիական լուսավորության ցանցում սովորում է նաև 7.300 կոմերիտական ու մոտ 10 հազար անպարտիական։

Վերջին տարիներս զգալիորեն բարելավվել է պրոպագանդիստների և խմբակների ղեկավարների կազմը։ Մեծ չափով ավելացել է բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեցող պրոպագանդիստների տեսակարար կշիռը։

Բարելավվել է նաև պարտիական օրգանների աշխատանքը պրոպագանդիստների հետ։

Գյուղական պրոպագանդիստների հետ կատարվող սիստեմատիկ աշխատանքը և ամառվա ամիսներին ամեն տարի միամսյա դասընթացների ու քաղաքային պրոպագանդիստների երկամսյա դասընթացների հրավիրումը բարելավեցին պարտիական լու-

սավորության ցանցի ղեկավարումը և բարձրացրին ուսման որակը։

Պրոպագանդիստներին տեսական և մեթոդական մեծ օգնություն է ցույց տրվում մշտապես գործող սեմինարների միջոցով, որոնք սիստեմատիկաբար հրավիրվում են ամիսը մեկ անգամ՝ գյուղական շրջաններում և ամիսը երկու անգամ՝ քաղաքներում։

Չնայած պրոպագանդիստների և քաղդպրոցների ղեկավարների հետ պարտիական օրգանների կատարած սիստեմատիկ աշխատանքին, պարտիական բոլոր կազմակերպություններում չէ, որ պարապմունքների գաղափարական մակարդակը պատշաճ բարձրության վրա է գտնվում։ Օրինակ, Արտաշատի, Կոտայքի, Ախուրյանի, Բասարգեչարի շրջաններում սեմինարները հրավիրվում են ոչ թե ըստ ուսման տարիների, այլ բոլոր պրոպագանդիստների համար միասին։

Սեմինարների պարապմունքների թեմատիկան չի համապատասխանում քաղդպրոցների և խմբակների հերթական թեմաներին։ Պրոպագան-



դիստների պլաններն ու թեզերը չեն քննարկվում և անհրաժեշտ մեթոդական ցուցումներ չեն տրվում առաջիկա թեմաների առթիվ։

Նույն թերություններն ունեն նաև այն սեմինարները, որ կազմակերպում են Երևան քաղաքի ռայոնական պարտիական կոմիտեները։

Առանձին պարտիական կազմակերպություններում հաճախ խմբակների և պարտդպրոցների պարապմունքները ձախողվում են շրջկոմների և սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների անբավարար վերահսկողության հետևանքով, ինչպես, օրինակ, Վեդու, Կիրովականի, Ազիզբեկովի և Ապարանի շրջաններում։

Լուրջ թերություններ կան նաև մարքսիզմ-լենինիզմի թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների հետ կատարվող աշխատանքի բնագավառում։ Կոմունիստների մի մասը սիստեմատիկաբար որոշ պլանով ու ծրագրով չի պարապում, որի հետևանքով երկար ժամանակ կանգ է առնում միևնույն թեմայի ուսումնա-

սիրման վրա և մի քանի տարի շարունակ միևնույն տեղումն է մնում։

Կոմունիստների ինքնուրույն ուսուցումը կազմակերպելու գործում հաջորդ թերությունն այն է, որ առանձին շրջանային կոմիտեների և նրանց պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինները իրենց հեռու են պահում կոմունիստների ինքնուրույն ուսուցումը ղեկավարելուց և ամբողջ աշխատանքը բարդում են կոնսուլտանտների վրա։ Այդպիսի երևույթներ պատահում են Լենինականի քաղկոմում, Վեդու և այլ շրջկոմներում։

Պարտիական կազմակերպություններն իրենց աշխատանքում պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն պարտիական լուսավորության ցանցի վիճակին, ուժեղացնեն իրենց օգնությունը պրոպագանդիստներին և վերացնեն եղած թերությունները ու պրոպագանդիստական կադրերի հոսունությունը։

Պարտիայի շրջանային կոմիտեները և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինները պետք է բարելավեն



իրենց ղեկավարությունը մարքսիզմ-լենինիզմի թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների նկատմամբ, ավելի լայն օգտագործեն հաստիքային պրոպագանդիստներին ու կոնսուլտանտներին, ոչ մի դեպքում նրանց չզբաղեցնելով այլ աշխատանքով։

Այդ վերաբերում է առաջին հերթին Ամասիայի, Կալինինոյի, Զանգիբասարի և Կոտայքի շրջկոմներին։

Պետք է բարելավել նաև Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի դասախոսական խմբի աշխատանքը։ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը շրջաններին պետք է ավելի լրիվ սպասարկի դասախոսական խմբի ուժերով։

Մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան ղեկավարելու ասպարեզում պարտիական կազմակերպությունների ամբողջ աշխատանքի նպատակը պետք է լինի՝ է՛լ ավելի բարձրացնել ուսման գաղափարական մակարդակը պարտիական լուսավորության ցանցում, ավելի սերտորեն կապել ուսուցումը կոմունիստական հասա-

բակակարգի կառուցման ժամանակակից խնդիրների հետ։

Հաշվետու շրջանում բարելավվել է պարտիական կազմակերպությունների մասսայական-քաղաքական ագիտացիոն աշխատանքը բնակչության մեջ։

Քաղաքական-մասսայական աշխատանքը դարձել է ավելի նպատակասլաց և ավելի մասսայական։ Ագիտացիոն աշխատանքը առանձնապես մեծ թափ ու ծավալ ընդունեց ՍՍՌ Միության Գերագույն Սովետի ընտրությունների, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների շրջանում։

Ավելի բազմամարդ դարձավ ագիտատորների կազմը և խիստ բարելավվեց ագիտացիայի գաղափարական մակարդակը։ Սակայն այս բնագավառում ևս մի շարք շրջանային պարտիական կազմակերպություններում կան թերություններ։

Այդ թերություններից են ինտելիգենցիայի անբավարար ներգրավումը թե՛ քաղաքում, և թե՛ գյուղում կատարվող ագիտացիոն աշխատանքի



մեջ։ Թույլ է քաղկոմների ու շրջկոմների և նրանց պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինների օգնությունն ու ղեկավարությունը ագիտկոլեկտիվների աշխատանքում։

Որոշ շրջկոմներ, ինչպես, օրինակ, Վեդու, Ախտայի ու Կալինինոյի շրջկոմները, թույլ են ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարում ռուսական, քրդական և ադրբեջանական բնակչության մեջ, իսկ Երևան քաղաքի ռայկոմները և Լենինականի քաղկոմը՝ արտասահմանից վերադարձած հայերի մեջ։

Թերություն պետք է համարել նաև դիտողական ագիտացիայի թույլ օգտագործումը։

Պարտիական կազմակերպությունները իրենց ամբողջ քաղաքական աշխատանքում պետք է անդուլ ուշադրություն նվիրեն աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործին, Սովետական Միության մյուս ժողովուրդների կուլտուրայի ավելի լայն ուսումնասիրությանը, տնտեսության և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերված նվաճումներին փոխադարձա-

քար ծանոթանալու և է՛լ ավելի ուժեղացնեն բարեկամական կապերն ու շփումը Սովետական Միության մյուս ժողովուրդների, մասնավորապես Անդրկովկասի ժողովուրդների հետ։

Հայաստանի կոմպարտիայի 15-րդ համագումարը, գնահատելով աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում պարտիական կազմակերպությունների կատարած աշխատանքը, պարտիական կազմակերպությունների առջև խնդիր կդնի՝ է՛լ ավելի ուժեղացնել Լենինի — Ստալինի գաղափարների պրոպագանդան, աշխատավորներին դաստիարակել դեպի սոցիալիստական Հայրենիքը նվիրվածության ոգով, ամբողջ աշխատավոր բնակչությանն ավելի ակտիվ մասնակից դարձնել մեր երկրում կոմունիզմի կառուցմանը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է ուժեղացնել քաղաքական ու դաստիարակչական աշխատանքը կանանց մեջ և նրանց լայնորեն ներգրավել արտադրական, հա-



սարակական ու պետական գործունեության մեջ։

Հաշվետու շրջանում Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը բազմիցս քննել է այն հարցը, թե ինչ վիճակում է պարտիական կազմակերպությունների աշխատանքը կանանց շրջանում, միջոցառումներ է մշակել այդ աշխատանքն ուժեղացնելու համար, որի շնորհիվ աշխուժացել է աշխատանքը կանանց շրջանում։

Ռեսպուբլիկայի բանվորների և ծառայողների մեջ կանանց թիվը ներկայումս հասել է 38 տոկոսի, իսկ անմիջականորեն արդյունաբերության մեջ աշխատողներինը՝ 40 տոկոսի։

Կանայք սկսել են մեծ դեր խաղալ կոլխոզային արտադրության մեջ։ Ավելացել է առողջապահության և ժողովրդական լուսավորության օրգաններում աշխատող կանանց թիվը, որը կազմում է աշխատողների ընդհանուր թվի երկու երրորդը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքին կանանց ցուցաբերած այդ մեծ մասնակցությունը

պահանջում է նրանց ավելի լայնորեն առաջ քաշել ղեկավար աշխատանքի։

Կանանց առաջ քաշելու դիրեկտիվը անբավարար է իրականացվում Կիրովականի, Սիսիանի, Սպիտակի շրջաններում, Երևան քաղաքի Ստալինյան ռայոնում, Լենինական քաղաքում և մի քանի այլ շրջաններում։

Հիշյալ շրջանների պարտիական կազմակերպությունները, չնայած արտադրական աշխատանքում կանանց ցուցաբերած լայն և ակտիվ մասնակցությանը, նրանց քիչ են առաջ քաշում ղեկավար աշխատանքի որպես ֆերմաների վարիչներ, բրիգադիրներ, կոլխոզների նախագահներ, ցեխերի պետեր, ձեռնարկությունների դիրեկտորներ և որպես այլ ղեկավար աշխատողներ՝ կոլխոզներում, ձեռնարկություններում ու հիմնարկներում։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 4-րդ պլենումի որոշումից հետո որոշ չափով բարելավվել է կանանց առաջքաշումը ղեկավար պարտիական ու սովետական աշխատանքի։ Կանայք առաջ են քաշվել որպես շրջանային գործկոմների նախագահներ ու բաժինների վարիչ-



ներ, պարտիայի շրջկոմ-քաղկոմների բաժինների վարիչներ և քարտուղարներ, մինիստրներ ու մինիստրների տեղակալներ և այլն։

Կանանց հետագա առաջքաշումը ղեկավար աշխատանքի՝ պահանջում է բարելավել կանանց շրջանում պարտիական կազմակերպությունների կողմից կատարվող քաղաքական ու դաստիարակչական աշխատանքը, նրանց ավելի լայնորեն ներգրավել հասարակական, պրոֆմիութենական, կոմերիտական և այլ կազմակերպությունների ակտիվ աշխատանքում։

Պարտիական կազմակերպությունները պետք է ինչպես պարտիական, այնպես էլ անպարտիական ակտիվիստ կանանց ավելի լայնորեն ներգրավեն պարտիական լուսավորության ցանցի մեջ, կադրերի նախապատրաստման դասընթացներում, պարտիայի շրջկոմներին կից պարտիական դպրոցներում ու պարտակտիվի երեկոյան դպրոցներում, ինչպես նաև մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանում։

Կանանց քաղաքական դաստիարա-

կության ասպարեզում պարտիական
կազմակերպությունների կատարած
այդպիսի աշխատանքը միայն կապա-
հովի ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիրեկտի-
վի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի
այն որոշումների կատարումը, որոնք
պահանջում են կանանց լայնորեն ա-
ռաջ քաշել ղեկավար պարտիական-
քաղաքական և պետական աշխատան-
քի։

Սակայն հարցի միայն այդպիսի
լուծումը միակողմանի կլինի և հաջո-
ղություն չի բերի, եթե այդ աշխա-
տանքի հետ միաժամանակ պարտիա-
կան կազմակերպությունները ավելի
ուժեղ աշխատանք չծավալեն՝ իրա-
կանացնելու համար կանանց իրա-
վունքների ու արտոնությունների վե-
րաբերյալ օրենքները և մանկական
ու կանանց հիմնարկներ՝ մանկամսուր-
ներ ու ծննդատներ ստեղծելու, ինչ-
պես նաև կենցաղում ու արտադրու-
թյան մեջ կանանց աշխատանքը թե-
թևացնելու ուղղությամբ։

Պարտիական կազմակերպություն-
ները պետք է ուժեղացնեն իրենց վե-
րահսկողությունը, որպեսզի բոլոր



սովետական, տնտեսական և այլ կազ-
մակերպությունները, առանց բացա-
ռության, իրականացնեն կառավարու-
թյան որոշումները այդ հարցերի մա-
սին։

Պետք է ձգտել, որ լրիվ յուրացվեն
այն բոլոր միջոցները, որ կառավա-
րությունը հատկացնում է մանկական
և կանանց հիմնարկների ցանցն ըն-
դարձակելու համար։

Կոլխոզների, և առաջին հերթին խո-
շոր կոլխոզների, առջև պետք է խըն-
դիր դնել՝ ամենամոտ տարիներս բո-
լոր կոլխոզներում կազմակերպել
ծննդատներ, կոնսուլտացիաներ, ման-
կապարտեզներ և մանկամսուրներ։

Վերջերս տեղի ունեցավ Հայաստա-
նի կոմունիստական երիտասարդու-
թյան միության 15-րդ համագումարը,
որն ամփոփեց կոմերիտական կազմա-
կերպությունների աշխատանքի ար-
դյունքները և նշեց նրանց աշխատան-
քի հետագա խնդիրները։

Հայաստանի Լենինյան կոմերիտ-
միությունը վերջին տարիներս զգա-
լիորեն աճել է քանակապես և ներկա-
յումս իր շարքերում ունի 138 հազար

կոմերիտական, հաշվետու շրջանում ավելանալով 30 հազար մարդով, այդ թվում տասը հազարը բանվորական ե-րիտասարդության շարքերից։

Կոմերիտմիության այդ մեծ աճը է՛լ ավելի սուր կերպով դրեց երիտասար-դության կոմունիստական դաստիա-րակության ուղղությամբ կատարվող աշխատանքի վիճակի հարցը։

Կոմերիտմիության համագումարը լուրջ թերություններ նշեց կոմերիտա-կան-լուսավորության ցանցի աշխա-տանքում, մատնանշեց պարապ-մունքների անբավարար գաղափարա-կան մակարդակը, խմբակների ու քաղդպրոցների ղեկավարների ու պրո-պագանդիստների թույլ պատրաստու-թյունը և Հայաստանի կոմերիտմիու-թյան Կենտկոմի ու շրջկոմների անբա-վարար աշխատանքը խմբակների ու քաղդպրոցների ղեկավարների սիստե-մատիկ սեմինարներ կազմակերպելու ուղղությամբ։

Այդ թերությունների համար զգալի չափով մեղավոր են նաև պարտիայի շրջկոմներն ու քաղկոմները, որոնք բավարար օգնություն ցույց չեն տա-



լիս կոմերիտմիությանը՝ կոմերիտա-կան-լուսավորության ցանցի աշխա-տանքը կանոնավորելու գործում։

Լուրջ թերություններ կան նաև կոմ-երիտական կազմակերպությունների աշխատանքի մի այլ կարևոր բնագա-վառում՝ երիտասարդության հանրա-կրթական մակարդակը բարձրացնելու գործում։

Կոմերիտական կազմակերպություն-ների կարևոր խնդիրներից մեկը, որը պետք է լուծվեր ամենամոտ ժամա-նակներս, այն է, որ յուրաքանչյուր կոմերիտական միջնակարգ կրթություն ստանա։

Դրա համար պետք է հատկապես լուրջ ուշադրություն նվիրել, որպեսզի գիշերային հանրակրթական դպրոց-ները ներգրավվի այն երիտասարդու-թյունը, որն աշխատում է արտադրու-թյան մեջ և որևէ պատճառով չի ա-վարտել միջնակարգ կրթությունը։

Այդ գործում մեծ պարտականություն է ընկնում պարտիական կազմակեր-պությունների և ժողովրդական կրթու-թյան օրգանների վրա, որոնք պետք

է պայմաններ ապահովեն այդ խնդրի հաջող լուծման համար։

Արտադրական պրոցեսների լայն մեքենայացման պայմաններում երիտասարդության դաստիարակության մի այլ կարևոր հարցն է կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը երիտասարդ բանվորների ու կոլխոզնիկների արտադրական որակավորումը բարձրացնելու և նրանց տեխնիկական գիտելիքները ուժեղացնելու ուղղությամբ։

Պարտիական կազմակերպությունները և համապատասխան մինիստրությունները պետք է ամեն կերպ օգնություն ցույց տան կոմերիտական կազմակերպություններին, այդ խնդիրը լուծելու գործում։

Կոմերիտմիության վերջին համագումարում զգալիորեն ամրապնդվեց Հայաստանի կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությունը։

Պետք է հույս ունենալ, որ նոր ղեկավարությունը, հաշվի առնելով կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները,



կոմերիտմիության . ամբողջ աշխա-
տանքի կենտրոնում կդնի երիտասար-
դության կոմունիստական դաստիա-
րակության հարցերը և կկարողանա
պատվով կատարել պարտիայի մեր-
ձավորագույն օգնականի դերը։

Հայաստանի պրոֆեսիոնալ միու-
թյունների խորհուրդ կազմակերպվե-
լուց հետո զգալիորեն աշխուժացավ
պրոֆմիութենական կազմակերպու-
թյունների աշխատանքը՝ մեծ չափով
բարելավվեց ռեսպուբլիկական կոմի-
տեների ղեկավարությունը տեղական
պրոֆմիութենական կոմիտեների աշ-
խատանքի նկատմամբ և ուժեղացավ
կադրերի ու պրոֆմիութենական ակ-
տիվի հետ կատարվող աշխատանքը։

Դրա հետ միասին անհրաժեշտ է
նշել թերության առկայությունը պը-
րոֆմիությունների աշխատանքի առա-
վել կարևորագույն բնագավառում՝ աշ-
խատավորների կուլտուրական-կեն-
ցաղային պայմանները է՛լ ավելի բա-
րելավելու գործում։

Պրոֆեսիոնալ միությունները այդ
գործը հաճախ դիտում են որպես երկ-
րորդական, անցնում են բնակարանա-

յին ու Նուբարաշեն-կենցաղային օբյեկտների շինարարության պլանների այն խախտումների կողքով, որոնք թույլ են տալիս առանձին մինիստրություններ, ձեռնարկությունների դիրեկտորներ և շինարարությունների պետեր. միջոցներ ձեռք չեն առնում ժամանակին նորոգելու և սարքավորելու բնակելի տներն ու բանվորական հանրակացարանները, հաշտվում են զանազան կենցաղային ձեռնարկությունների՝ բաղնիքների, լվացքատների նորոգման և կարի արհեստանոցների վատ աշխատանքի հետ։

Շատ պրոֆմիութենական կազմակերպություններ դեռևս հասարակական վերահսկողություն չեն հաստատել բանվորական մատակարարման ու հասարակական սննդի օբյեկտների աշխատանքի նկատմամբ։ Դա առաջին հերթին վերաբերում է սննդի արդյունաբերության աշխատողների պրոֆմիության, տեքստիլ արդյունաբերության աշխատողների պրոֆմիության, ռեսպուբլիկական կոմիտեներին, Կիրովի անվան, Ձերժինսկու անվան գործարանների, կոմպրեսորների, Կա-



նաչ գործարանի գործարկոմներին և Քաջարանշինի շինկոմին։

Այդ պրոֆմիութենական կազմակերպությունները պետք է բարելավեն հանրային սննդի գործը, ճաշարանների կահավորումն ու նորոգումը և նրանց սանիտարական վիճակը։

Հայաստանի պրոֆեսիոնալ միությունների խորհուրդը և պրոֆմիությունների ռեսպուբլիկական կոմիտեները պետք է ավելի մեծ համառություն ցուցաբերեն կոլեկտիվ պայմանագրերի լիակատար իրականացման գործում և թույլ չտան դրանց պայմանների խախտումներ վարչության կողմից։

Պարտիական կազմակերպությունները պետք է ավելի շատ զբաղվեն պրոֆմիութենական կազմակերպությունների աշխատանքով, պրոֆմիութենական ակտիվից աճող աշխատողներին ղեկավար պրոֆմիութենական աշխատանքի առաջ քաշելու հարցերով, ավելի հաճախակի ստուգեն նրանց աշխատանքը և օգնություն ցույց տան տեղական կոմիտեների աշխատանքում հայտնաբերված թերություն-

ները վերացնելու գործին, Հասնեն
պրոֆմիութենական ամբողջ աշխա-
տանքի մակարդակի բարձրացմանը։
Նույնպիսի ուշադրություն պետք է
նվիրել նաև մյուս մասսայական հա-
սարակական կազմակերպությունների,
մանավանդ Բանակին, Ավիացիային
ու Նավատորմին աջակցող ընկերու-
թյուններին և ֆիզկուլտուրային ու այլ
կազմակերպություններին։
Պարտիական կազմակերպություն-
ները պետք է միշտ իրազեկ լինեն կա-
մավոր ընկերությունների աշխատան-
քին՝ նրանց պլանների կատարման
ուղղությամբ և գործնական օգնու-
թյուն ցույց տան նրանց առօրյա աշ-
խատանքում։
Հաշվետու շրջանում տեղի էր ունե-
նում կադրերի ընտրության, առաջ-
քաշման, տեղադրման և նրանց բոլշե-
վիկյան դաստիարակության ասպա-
րեզում Հայաստանի Կ(բ)Պ շրջկոմնե-
րի, քաղկոմների և Կենտկոմի աշ-
խատանքի հետագա բարելավումը։
Այդ գործում մեծ դեր խաղաց այն
հանգամանքը, որ պատրաստման և
վերապատրաստման համար ռեսպուբ-



լիկայից ղեկավար աշխատողներ ու-
ղարկվեցին Մոսկվա, ՀամԿ(բ)Պ
Կենտկոմին կից բարձրագույն պար-
տիական դպրոցը և միամյա դասըն-
թացները։ Ընդամենը ուղարկվեց 38
մարդ, որոնցից 18 մարդ ավարտելով
ուսումը, վերադարձան և ձեռնամուխ
եղան աշխատանքի։
Զգալի թվով պատասխանատու աշ-
խատողներ սովորում են ՀամԿ(բ)Պ
Կենտկոմին կից բարձրագույն պար-
տիական դպրոցի հեռակա բաժան-
մունքում։ Սովորող 144 ընկերներից 32
մարդ ավարտեցին ուսումը և տվին
պետական քննություն, իսկ 17 ընկեր-
ներ ավարտեցին ուսման լրիվ կուրսը
և պատրաստվում են պետական քըն-
նություններ տալ։
Շրջկոմների և սովետական ապա-
րատի ղեկավար աշխատողները սովո-
րում են Հայաստանի Կ(բ)Պ Կենտկո-
մին կից երկամյա պարտիական դըպ-
րոցում։
Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համա-
գումարից հետո այդ դպրոցն ավար-
տեց 275 մարդ, որոնցից 121 հոգի
ուղարկվեցին պարտիական օրգաննե-

րում աշխատելու. նրանցից որպես շրջկոմների քարտուղարներ՝ 36 մարդ և բաժինների վարիչներ՝ 54 մարդ։

Դպրոցն ավարտողների մի մասը ուղարկվեց խոշոր պարտիական կազմակերպությունները որպես քարտուղարներ և ղեկավար սովետական աշխատանքի։

Ներկայումս այդ դպրոցում սովորում է 248 մարդ։ Բացի դրանից, պարտիական-սովետական 80 աշխատող վերապատրաստվել է 9-ամսյա դասընթացներում՝ առանց իրենց պաշտոններից ազատվելու։

Ուսումնական այդ բոլոր միջոցառումների հետևանքը եղավ այն, որ ներկայումս պարտիական օրգանների աշխատողներից ավելի քան կես մասը ունեն հատուկ քաղաքական պատրաստություն։

Դրա հետ միասին իր աշխատանքը շարունակում էր շրջկոմների քարտուղարների գործող սեմինարը՝ քարտուղարների թեորիական մակարդակը բարձրացնելու համար, ինչպես նաև պարբերաբար դասախոսություններ էին կազմակերպվում քաղաքական



այժմեական թեմաների շուրջը՝ շրջկոմների բաժինների վարիչների համար։

Կադրերի բոլշևիկյան դաստիարակության գործում սկսել է մեծ դեր խաղալ պարտիական ակտիվի շրջանային ու քաղաքային ժողովների հաճախակի գումարումը պարտիական կազմակերպությունների աշխատանքի կարևորագույն հարցերի շուրջը։ Ակտիվների ժողովներում քննվում են ՀամԿ(բ)Պ Կենտկոմի կարևորագույն դիրեկտիվների գործնական լուծման ընթացքի հարցերը։

Ակտիվի այդ ժողովների նշանակությունն այն է, որ լայն պարտակտիվը իրազեկ է դառնում գործին, մասնակցում է պարտկազմակերպությունների կյանքի կարևոր հարցերի լուծմանը, ընդարձակում է իր մտահորիզոնը։ Թերությունների քննադատությունը ընդունում է կոնկրետ, նպատակասլաց բնույթ և տեղի է ունենում գաղափարական բարձր մակարդակով։

Այդ գործում հաջողություն են ձեռք բերել Երևանի քաղաքային ու ռայոնական պարտկազմակերպությունները,

որոնք 1950 թվականի ընթացքում գումարել են պարտիական քաղաքային ակտիվի հինգ ժողով և յուրաքանչյուր ռայոնի պարտիական ակտիվի հնգական ժողով, Լենինականի քաղաքային պարտկազմակերպությունը, որը կազմակերպել է պարտակտիվի յոթ ժողով, և Կիրովականի պարտկազմակերպությունը, որը կազմակերպել է վեց ժողով։

Պարտիական ակտիվի ժողովներ գումարելու գործի նշանակությունը թերագնահատվում է հետևյալ շրջաններում՝ Էջմիածնի, Արտաշատի, Բասարգեչարի, Գորիսի, Կոտայքի և Սպիտակի շրջաններում, որոնք ամբողջ տարվա ընթացքում գումարել են պարտակտիվի երկուական ժողով։

Շատ շրջաններ՝ Ախուրյանի, Աշտարակի, Իջևանի, Ղափանի, Հոկտեմբերյանի, Մարտունու, Ստեփանավանի և այլ շրջաններ, 1950 թվականին գումարել են շրջանային պարտակտիվի միայն երեքական ժողով։

Շատ շրջաններում պարտիական ակտիվի ժողովների թերությունն այն է, որ նրանք չգիտեն ընտրել քննարկ-



վելիք հարցերը։ Քննարկման են դրվում միայն այն հարցերը, որոնք թելադրում են վերադաս պարտիական օրգանները։ Շրջկոմները քիչ են նախաձեռնություն ցուցաբերում տվյալ պարտկազմակերպության համար հրատապ հարցեր առաջադրելու գործում։ Դրա հետևանքով այդ հարցերի քննարկմանը մասնակցում են ներկա գտնվողներից սահմանափակ թվով ընկերներ, իսկ ինքը՝ քննարկումը տեղի է ունենում գաղափարական ցածր մակարդակով։

Պարտիայի շրջանային կոմիտեները պետք է վերացնեն այդ թերությունները, բարձրացնեն պարտիական ակտիվի ժողովների դաստիարակչական դերը և գործնական նշանակությունը։

Կադրերի հետ պարտիական օրգանների կատարած աշխատանքում վճռական գործոն է նրանց քաղաքական անդուլ դաստիարակությունը բոլշևիկյան սկզբունքայնության և դեպի աշխատանքի թերությունները անհաշտ վերաբերմունքի ոգով։

Այդ աշխատանքում գլխավորն է

բոլշևիկյան գործարար քննադատու-
թյան և ինքնաքննադատության մշտա-
կան ու լայն ծավալումը։

Այդ գործում հսկայական դեր խա-
ղաց ՀամԿ(բ)Պ Մոլոտովյան մարզ-
կոմի աշխատանքի մասին ՀամԿ(բ)Պ
Կենտկոմի ընդունած որոշումը և այդ
հիման վրա, 1950 թվականի հունվա-
րի 11-ին Հայաստանի Կ(բ)Պ Կենտ-
կոմի ընդունած համապատասխան
որոշումը։

Այդ որոշման իրականացումը նկա-
տելիորեն աշխուժացրեց քննադատու-
թյունը և ինքնաքննադատությունը
պարտիական կազմակերպություննե-
րում։

Այնուամենայնիվ Հայաստանի Կ(բ)Պ
Կենտկոմի կատարած հետագա ստու-
գումը ցույց տվեց, որ մի քանի շըր-
ջաններում, ինչպես Ապարանի, Ախ-
տայի, Վեդու, Կոտայքի և այլ շրջան-
ներում, խոշոր թերություններ կան
քննադատության ու ինքնաքննադա-
տության ծավալման և պարտիայի
շրջկոմների աշխատանքի կոլեգիալու-
թյան ասպարեզում։

Պետք է նշել, որ այդ տեսակետից



գործը առանձնապես անբարեհաջող էր
Վեդու շրջանում, որտեղ պարտիայի
շրջկոմը, մանավանդ ինքը՝ ընկ. Ազ-
գալդյանը, փոխանակ կազմակերպա-
կան-քաղաքական աշխատանք կատա-
րելու, սկսել էր նկատելիորեն թեքվել
դեպի հրամայելու և վարչարարու-
թյան ուղին։

Այդ առթիվ ընդունված որոշման
մեջ Կենտկոմը դատապարտեց ընկ.
Ազգալդյանի աշխատանքի մեթոդները,
մատնանշելով նրա ոչ պարտիական
վերաբերմունքը դեպի քաղաքական
ղեկավարի իր պարտականություննե-
րը։ Այդ արտահայտվել է նրանով, որ
ընկ. Ազգալդյանը անտեսել է պար-
տիական դիրեկտիվները՝ պարտիա-
կան-քաղաքական աշխատանքը ամեն
կերպ ուժեղացնելու և քննադատու-
թյունն ու ինքնաքննադատությունը
ծավալելու մասին։ Փոխանակ քննա-
դատությունը և ինքնաքննադատու-
թյունը գլխավորելու, ընկ. Ազգալդյա-
նը իր գործնական աշխատանքում
սահմանափակել է դրանք, բթացրել է
կոմունիստների զգոնությունը գոյու-
թյուն ունեցող թերությունների նկատ-

մամբ, իսկ շրջկոմի բյուրոյի անդամները հաշտվել են ստեղծված իրադրության հետ և սկզբունքայնություն չեն ցուցաբերել ընկ. Աղգալդյանի աշխատանքում թույլ տրված սխալները ուղղելու գործում։

Այդ կապակցությամբ պետք է հիշատակել նաև պարտիայի Ապարանի շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Հարությունյանի աշխատանքի մեթոդները։ Նա աշխատանքում կոլեգիալություն պահպանելը անհրաժեշտ չէր համարում այն աստիճան, որ նույնիսկ ավելորդ էր համարում շրջկոմի քարտուղարներին, էլ չենք ասում բյուրոյի մյուս անդամներին, ծանոթացնել Կենտկոմից ստացված որոշումների հետ, նույնիսկ այն դեպքերում, երբ այդ որոշումները անմիջականորեն վերաբերում էին Ապարանի շրջկոմին։

Մերկ վարչարարության և քննադատության ու ինքնաքննադատության ճնշելու ուղին էր բռնել պարտիայի Կոտայքի շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Խաչատրյանը, որին Կենտկոմը ստիպված եղավ հանել աշխա-



տանքից և նկատողություն հայտարարել այն բանի համար, որ իր գործնական աշխատանքում նա թույլ է տվել աղաղակող կամայականության փաստեր։

Կադրերի հետ կատարվող աշխատանքում պարտիայի մի քանի շրջկոմների լուրջ թերությունն է նրանց ցուցաբերած անթույլատրելի հանդուրժողականությունը դեպի այն աշխատողները, որոնք խախտել են պարտիական և պետական կարգապահությունը։

Կենտկոմը բազմիցս և համառորեն հիշեցրել է, որ անթույլատրելի է նախկին պաշտոններում տապալված կադրերը մի այլ պատասխանատու աշխատանքի նշանակելը։

Կենտկոմը մատնանշել է նման թերություններ, որոնք տեղի են ունեցել Ազիզբեկովի ու Բասարգեչարի շրջկոմների աշխատանքում և մինչև այժմ էլ չեն վերացվել նաև նախկին Ամասիայի, Մեղրու և մի քանի այլ շրջկոմներում։

Պարտիական կազմակերպությունները, նպատակ դնելով բոլշևիկյան

ճիշտ դաստիարակություն տալ կադ-
րերին, նրանց բարձր պատասխա-
նատվություն պատվաստել հանձնված
գործի համար, պետք է տապալված
աշխատողներին ուղարկեն ստորին
աշխատանքի և միայն այն ժամանակ,
երբ նրանք իրենց կարդարացնեն ստո-
րին աշխատանքում, կարող է խոսք
լինել նրանց առաջ քաշման մասին։

Աշխատանքում կոլեգիալության
սկզբունքի խախտում է նկատվում
նաև սովետական ղեկավար օրգաննե-
րում՝ Արդարադատության մինիստրու-
թյունում, Անտառարդյունաբերու-
թյան մինիստրությունում, Առևտրի
մինիստրությունում, Երևանի քաղա-
քային Սովետի գործկոմում և այլ
կազմակերպություններում։

Այդ մինիստրությունների կոլեգիա-
ներում չեն քննարկվում ղեկավար օր-
գանների կարևորագույն դիրեկտիվնե-
րը և դրանց կատարման վիճակը։ Կո-
լեգիայում քննարկման ենթակա շատ
հարցեր լուծում է ղեկավարը միանձ-
նաբար։ Այդ մինիստրությունների և
կազմակերպությունների ղեկավարնե-
րը պետք է վերացնեն ղեկավարման



այդ մեթոդը և պահպանեն պարտիայի
այն դիրեկտիվը, որը պահանջում է
կոլեգիալություն ղեկավար օրգաննե-
րի աշխատանքում։

Համագումարի ուշադրությունը պետք
է հրավիրել նաև բացասական մի քա-
նի երևույթների վրա, որոնք մինչև
այժմ էլ տեղի են ունենում պարտիա-
յի անդամների դաստիարակության
գործում և պարտիական ու պետական
կարգապահությունը պահպանելու աս-
պարեզում։

Այն զանցանքների վերլուծումը, ո-
րոնց համար պատժվել են պարտիայի
առանձին անդամներ ու թեկնածուներ,
ցույց է տալիս, որ մինչև այժմ էլ մեծ
է այն կոմունիստների թիվը, որոնք
պատասխանատվության են կանչվում
պետական, կոլխոզային ու կոոպերա-
տիվ գույքը յուրացնելու, վատնելու և
գողանալու համար։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի բյու-
րոն դեռ 1949 թվականին քննելով այդ
հարցը, պարտիական կազմակերպու-
թյուններին մատնանշեց այդ երև-
վույթների պատճառները, այն, որ
բավարար աշխատանք չի կատարվում

պարտիայի անդամների և աշխատա-
վորների մեջ դեպի պետական, հասա-
րակական սեփականությունը սոցիա-
լիստական վերաբերմունքի զգաց-
մունք, պետական բարիքը գողացող և
շռայլող անձանց նկատմամբ անհաշ-
տության զգացմունք դաստիարակելու
ուղղությամբ։

Պարտիական կազմակերպություն-
ների խնդիրն է՝ աշխատավորների մեջ
դաստիարակել այն գիտակցությունը,
որ պետական հասարակական սեփա-
կանությունը սոցիալիստական հա-
սարակության անսասան հիմքն է և
սոցիալիստական, հասարակական սե-
փականության պահպանությունն ու
ամրապնդումը բոլոր աշխատավորնե-
րի գործն է։

Պարտիական կազմակերպություն-
ները իրենց դաստիարակչական աշ-
խատանքում պետք է հասնեն այն
բանին, որ բոլոր կազմակերպություն-
ները և առանձին աշխատողներ սո-
վորեն գործնականորեն պայքար մղել
պետական, հասարակական սեփա-
կանությունը յուրացնողների դեմ։

Կոմունիստների մի մասի մեջ մյուս



բացասական երևույթը պետք է հա-
մարել այն աշխատողների վար-
քագիծը, որոնք տապալվել են իրենց
աշխատանքում, երբ աշխատանքում
տապալվելուց հետո նրանց ուղարկում
են այլ աշխատանքի, նրանք բառացի
սակարկում և պահանջում են իրենց
ինքնուրույն պատասխանատու աշխա-
տանքի ուղարկել։

Այդ ընկերներից ոմանք գերադա-
սում են ամիսներով ման գալ ա-
ռանց գործի, սակարկել և, հակառակ
պարտիայի դիրեկտիվներին, աշխա-
տում են, որ իրենց ուղարկեն ոչ պա-
կաս պատասխանատու գործի, քան
այն, որի ասպարեզում իրենք տապալ-
վել են։

Օրինակ՝ իրեն այդպես էր պահում
Շամշադինի շրջկոմի նախկին քար-
տուղար ընկ. Մ. Հովհաննիսյանը, Ավ-
տոտրանսպորտի նախկին մինիստր
ընկ. Ն. Հովհաննիսյանը, Ավտո-
տրանսպորտի մինիստրի նախկին
տեղակալ ընկ. Ս. Շադինյանը և ու-
րիշները։

Ավելորդ է ասել, որ պարտիայի մի
քանի անդամների այդ վարքագիծը

խանգարում է պարտիական կազմա-
կերպությունների՝ ճիշտ իրականաց-
նել կադրերի բաշխման և նպատակա-
համար օգտագործման բոլշևիկյան
սկզբունքը։
Պարտիական կազմակերպություն-
ները պետք է պատասխանատվու-
թյան կանչեն այդպիսի կոմունիստնե-
րին, որպես պարտիական կարգապա-
հության խախտողների և խստիվ
իրականացնեն տապալված աշխա-
տողներին ստորին աշխատանքի ու-
ղարկելու վերաբերյալ ցուցումը, որ-
պեսզի նրանք հնարավորություն չու-
նենան գործը նորից տապալելու մի
այլ պատասխանատու բնագավառում։
Ամփոփելով հաշվետու շրջանում
պարտիական կազմակերպությունների
կատարած ամբողջ աշխատանքը,
անհրաժեշտ է նշել պարտիական կազ-
մակերպությունների գործունեության
ընդհանուր բարելավումը, դեպի ներ-
պարտիական աշխատանքի հարցերը
կատարված նկատելի շրջադարձը, գա-
ղափարական մակարդակի բարձրա-
ցումը պարտիական կազմակերպու-
թյունների ամբողջ մասսայական-քա-



ղաքական աշխատանքում և ղեկավար
պարտիական ու սովետական կադրե-
րի թեորիական պատրաստության աճը։
Այդ բոլորի հետևանքը եղան ար-
դյունաբերության, գյուղատնտեսու-
թյան և կուլտուրայի ասպարեզում
ձեռք բերված այն հաջողությունները,
որոնցով իրավունք ունի պարծենալու
Հայաստանի Կոմունիստական (բոլ-
շևիկների) պարտիան։
Այդ հաջողությունները շատ ավելի
մեծ կլինեին, եթե մենք ետ մնացած
չլինեինք, տևականորեն ետ մնացած
չլինեինք մի շարք շրջանների պար-
տիական կազմակերպությունների աշ-
խատանքում։
Այդպիսի շրջանների շարքը պետք է
դասել Ապարանի, Կրասնոսելսկի և
Թալինի շրջանները։
Ի՞նչն է այդ շրջանների տևականո-
րեն ետ մնալու պատճառը։
Պատճառը չի կարելի փնտրել այդ
շրջանների օբեկտիվ պայմաններում
կամ ռեսպուբլիկական օրգանների
կողմից նրանց ցուցաբերված անբա-
վարար ուշադրության մեջ։
Պետությունը նյութական-տեխնի-

կական բավարար բազա է ստեղծել կոլխոզային տնտեսության զարգացման համար։

Նույնպիսի նպաստավոր պայմաններ են ստեղծվել, ինչպես մյուս շրջաններում, նաև այդ շրջանների կուլտուրական զարգացման համար։

Բոլոր շրջանները հավասարապես ապահովվում են ուսուցիչների, ագրոնոմների, բժիշկների, զոոտեխնիկների և այլ մասնագետների որակյալ կադրերով։

Ուրեմն այդ շրջանների ետ մնալու պատճառը դա չէ։

Ետ մնալու իսկական պատճառը պետք է փնտրել այդ շրջանների ղեկավարների վատ աշխատանքում։ Այդ շրջանների ղեկավարները և առաջին հերթին շրջկոմների քարտուղարներն ու շրջգործկոմների նախագահները հաշտվել են տևականորեն ետ մնալու հանգամանքի հետ, պատասխանատվություն չեն զգում շրջանում գործերի վիճակի համար և չեն ապահովում պարտիայի դիրեկտիվների և կառավարության որոշումների ժամանակին իրականացումը։



Նրանց այդպիսի ղեկավարության հետևանքով, վատ վիճակի մեջ է նաև այդ շրջանների պարտիական կազմակերպությունների աշխատանքը։

Մի ժամանակ նույնպիսի վիճակի մեջ էին գտնվում Էջմիածնի և Ջանգիբասարի շրջանները։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը, ազատելով աշխատանքից այդ շրջկոմների առաջին քարտուղարներին, նրանց ուղարկեց պարտիական դպրոցները պատրաստություն ձեռք բերելու համար, նրանց փոխարեն ուղարկելով որպես Էջմիածնի շրջկոմի քարտուղար ընկ. Գ. Ալեքյանին, որպես Ջանգիբասարի շրջկոմի քարտուղար՝ ընկ. Գասպարյանին, որոնք իրենց ցույց էին տվել առաջավոր կազմակերպություններում իրենց կատարած գործնական աշխատանքում։

Դրա հետ միասին ամրացվեց նաև շրջսովետների գործկոմների ղեկավարությունը։

Այդ միջոցառումը լիովին արդարացրեց իրեն և կարճ ժամանակա-

միջոցում Էջմիածնի ու Ջանգիբասարի շրջանների պարտիական կազմակերպությունները վերացրին իրենց ետ մնալը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը, տեղի ունեցած շրջանային պարտկոնֆերանսների ժամանակ կազմակերպական հետևություններ արեց նաև մի քանի այլ ետ մնացող շրջանների ղեկավարության նկատմամբ։

Նույն դրությունն ենք տեսնում նաև ռեսպուբլիկայի մի քանի մինիստրություններում, որոնց ղեկավարները չեն ապահովում կառավարական պլանների և աշխատանքի այլ ցուցանիշների կատարումը, իրենց գործունեության մեջ չեն ապահովում պարտիայի դիրեկտիվների ճիշտ իրականացումը։ Դրա հետևանքով այդ մինիստրությունների աշխատանքը երկար ժամանակ գտնվում է անբավարար վիճակում։ Այդպիսի մինիստրությունների շարքը պետք է դասել Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը՝ մինիստր ընկ. Լ. Միքայելյան, Անտառարդյու-



նաբերության մինիստրությունը՝ մինիստր ընկ. Մինասբեկով, Արդարադատության մինիստրությունը՝ մինիստր ընկ. Գ. Մեղավորյան։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը պետք է միջոցներ ձեռք առնի այդ մինիստրությունների աշխատանքը վճռաբար բարելավելու համար։

Պարտիայի 15-րդ համագումարը, անշուշտ, դիրեկտիվ կտա ինչպես շրջանային, այնպես էլ ռեսպուբլիկական կազմակերպությունների աշխատանքի առանձին բնագավառների ետ մնալը ամենակարճ ժամանակամիջոցում վերացնելու մասին, որովհետև սոցիալիստական տնտեսության հսկայական վերելքի և բազմաթիվ առաջավոր կադրերի աճման ժամանակակից էտապում չի կարելի հանդուրժել աշխատանքում ետ մնալը վատ ղեկավարների պատճառով։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները և շրջանային պարտիական կոնֆերանսները, որոնք գումարվեցին հունվար—մարտ ամիս-

ներին, բոլշևիկյան ամբողջ սրությամբ բացահայտեցին այդ թերությունները և գործնական միջոցառումներ նշեցին պարտիական, սովետական, տնտեսական և այլ կազմակերպությունների աշխատանքում հայտնաբերված թերությունները ուղղելու համար։

Դրա հետ միասին, գումարված պարտիական ժողովները և կոնֆերանսները ցույց տվին պարտիական կազմակերպությունների գաղափարական աճը, պարտիական ղեկավարության ուժեղացումը աշխատանքի բոլոր բնագավառներում և պարտիական շարքերի գաղափարական համախմբվածությունը ՀամԿ(բ)Պ Կենտկոմի շուրջը, պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։ (Ծափահարություններ):

Մեծ Ստալինի կողմից Անդրկովկասում ստեղծված ու դաստիարակված բոլշևիկյան կազմակերպությունների մարտական տրադիցիաներով ոգեշնչված Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ղեկավարու-



թյամբ, է՛լ ավելի սերտորեն կհամախմբի իր շարքերը՝ իրականացնելու համար այն վիթխարի խնդիրները, որոնք առաջադրել է ընկեր Ստալինը մեր երկրում կոմունիզմ կառուցելու համար։ (Բուռն ծափահարություններ):

Կեցցե՛ Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան։

Կեցցե՛ իմաստուն առաջնորդ և ուսուցիչ մեծ Ստալինը։ (Բուռն և երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում):

—О—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

